

Ապրիլի 25—28 Կրեմլի Համագումարների պալատում տեղի ունեցավ ՀամԼԿԵՄ 18-րդ համագումարը:

Համագումարում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի Գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը: Իր ճառում Լ. Ի. Բրեժնևն ասաց.

— Միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ մեծ խանդավառությամբ են աշխատում ամենուրեք, ուր առկա է կոմունիստական շինարարության ճակատը ...Նրանք ամեն մի գործի մեջ մտցնում են իրենց հատուկ ռոմանտիկական ավյունը և, եւ կասեի, երիտասարդական խոյանքը: Այդ ամենի համար շնորհակալություն կոմերիտմիությանը, շնորհակալություն սովետական երկրի բոլոր երիտասարդներին:

Այնուհետև հաշվետու զեկուցումով հանդես եկավ ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Բ. Ն. Պաստուխովը: Նա նշեց ժողտնտեսության տարբեր բնագավառներում կոմերիտականների մոտ 88 միլիոնանոց բանակի կատարած հայրենանվեր գործերի մասին:

Սովետական երիտասարդության այդ մեծ համաժողովը նոր խնդիրներ առաջադրեց մեր երկրի կոմերիտականներին, երիտասարդներին ու դպրոցականներին:

Հայրենական մեծ պատերազմի առաջին ամիսներն էին: Ուկրաինա, Չերկասսկի շրջան, Լեպլյավյան անտառ... Հինգ մարտիկներ վերադառնում էին մարտական առաջադրանքը կատարած: Երկաթգծի թմբի մոտ նստեցին հանգստանալու: Մեկն առաջարկեց գնալ ուղեպահից ուտելիք խնդրել: Առաջինը վեր կացավ Գոլիկովը՝ կլոր դեմքով, լայնաճակատ, հաղթանդամ մի մարդ՝ ջերմ հայացքով ու բարի մանկական ժպիտով: Բարձրանալով թմբի գագաթը և թփերում նկատելով դարանակալած հիտլերականներին՝ նա դեռ կարող էր փրկվել մի կողմ թռչելով կամ էլ ետ՝ դեպի ցած գլորվելով: Բայց այդ դեպքում հնարավոր է, որ կռիվեին իր ընկերները: Ունա, շրջվելով դեպի պարտիզանները, բղավեց.

— Տղանե՛ր, այստեղ գերմանացինե՛ր են...

Ճարճատեց ավտոմատը...

Այսպես կտրվեց Արկադի Պետրովիչ Գոլիկովի՝ Չապաևի անվան պարտիզանական ջոկատի գնդացրորդի, խիզախ մարտիկի և պիոներական լրագրողի կյանքի թելը, որը սովետական մանկական գրականության մեջ և բազմամիլիոնանոց կարմիրփողկապավոր գրվարդիայի սրտերն է մտել որպես գրող Գայդար (մոնղոլ հեծյալները այդպես անվանում են ջոկատի առջևից ընթացող դիտակալ ձիավորին):

Դա պատահեց 1941 թվականի հոկտեմբերի 26-ին:

Սակայն դրանով չավարտվեց նրա կենսագրության աշխարհագրությունը:

1947 թվականի սեպտեմբերին գրող-մարտիկի աճյունը կույգած նավակներով Լեպլյավո գյուղից տեղափոխվեց Կանև քաղաքը: Պատմությանը նման հուղարկավորության շատ քիչ դեպքեր են հայտնի:

# ԿԱՐՄԻՐՓՈՂԿԱՊԱՎՈՐՆԵՐԻ ԳՎԱՐԴԻԱՅԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԸ



*ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ*

Գայդարի բարեկամները որոշեցին նրան նվիրված անսովոր հուշարձան՝ գրադարան-թանգարան հիմնել: Սկզբում այն աննշմար մի տնակ էր, այժմ՝ երկհարկանի պալատ է:

Հարյուր հազարավոր էքսկուրսանտներ ու տուրիստներ՝ պատանի թիմուրականներից սկսած, մինչև հանրահայտ տիեզերագնացները, ամեն տարի գալիս են Կանև: Առաջին այցելությունը՝ Գայդարին, առաջին ծաղկեփնջերը՝ նրա շիրիմին, առաջին ողջույնը՝ գրողի բրոնզաձույլ կիսանդրուն: Եվ դա արդեն ավանդույթ է դարձել:

Գայդարի գրադարան-թանգարանը յուրօրինակ հանրագիտարան է, ուր ամեն այցելու կարող է սիրած գրողի մասին իմանալ ինչ ուզում է: Այստեղ ստացվում են ոչ միայն պիոներների, գրողների, ուսուցիչների ու Գայդարին ճանաչող մարդկանց ջերմ նամակները, այլև մարտիկ-գրողի անվան հետ կապված բազմապիսի նվերներ, հուշեր, առարկաներ ու փաստաթղթեր:

Ուսուցիչ Աշոտ Մանուկյանը, Ղափանից, ուղարկել է Գայդարի ածելին, որը պահել էր ավելի քան երեսուն տարի, լվովցի Վիկտոր Չերնիշովը՝ գրող-մարտիկի կողմնացույցը, տասնմեկամյա Սաշա Իլյիչովը, Խարկովից՝ Գայդարի «Հեքիաթ ռազմական գաղտնիքի մասին» գրքի սիրված հերոսի՝ Մալչիշ-Կիբալչիշի քանդակը, Թիմուր Գայդարը՝ գրողի որդին, թանգարանին հավերժ պահ է տվել Հայրենական պատերազմի I-ին աստիճանի շքանշանը, որով հայրը 1965 թվականին՝ հետմահու պարգևատրվել էր:

Շատ ճանապարհներ են տանում դեպի Կանև: Եվ միայն մեկը՝ Կանևից դեպի գրողի հայրենիքը: «Ես մեծացել եմ Արզամաս քաղաքում,— գրել է Գայդարը:— Այնտեղ բարձր ղողանջում էին երեսուն եկեղեցիների զանգերը, սակայն չէին լսվում գործարանային շչակների ձայներ... Հեղափոխական շարժումը տարվեցի դպրոցական նստարանից: Տասնչորս տարեկանում արդեն կուսակցության անդամ էի: Կամավոր մեկնեցի ռազմաճակատ, հանրապետության համար ամենածանր օրերին...»

Տասնհինգ տարեկանում Արկադի Գոլիկովը Կրեմենչուգի համար մղվող մարտերում վաշտի հրամանատար էր, տասնյոթում՝ մարտական տեղամասի հրամանատարի ժամանակավոր պաշտոնակատար, քսանում՝ գնդի հրամանատար: Բայց հավետ նա ընտրվել է... կարմիրփողկապավոր գվարդիայի՝ սովետական երեխաների բազմամիլիոն բանակի՝ նրա գրքերի ընթերցողների ու նրա երկրպագուների հրամանատար: Դժվար թե գտնվի մի մարդ, որ կարդացած չլինի նրա գրքերը՝ «Չուկը և Գեկը», «Ռազմական գաղտնիք», «Երկնագույն գավաթ», «Թիմուրը և իր ջոկատը» և այլն:

Դիմելով տակավին փոքրիկներին՝ ապագա զինվորներին, Հայրենական պատերազմի առաջին օրերին Գայդարը գրել է. «Կոմերիտակա՛ն, դպրոցակա՛ն, պիոնե՛ր, պատանի՛ հայրենասեր, պատերազմը նոր է միայն սկսվում, և գիտցի՛ր, որ դու դեռ պետք կգաս մարտում, մեզ օգնության գալիս եղիր ոչ միայն քաջ, այլև հմուտ»:

Այս կոչը, մակագրված կոմերիտական ու պիոներական կրծքանշաններին, իրենց կրծքին կրում են սովետական բոլոր երեխաները:

...Գնալով Գայդարի կենսագրության ճանապարհով, մենք կհասնենք վերջնական, ավելի ճիշտ սկզբնական կետին՝ նախկին Կուրսկի նահանգի Լգով քաղաքը, ուր 1904 թվի հունվարի 22-ին, ուսուցչի ընտանիքում ծնվեց Արկադի Գոլիկովը, գրող Գայդարը, աշակերտների գալիք բոլոր սերունդների ուսուցիչը:



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ

# ՄԱՅԻՍ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նորից Մայի՜ս է, ցնծությո՜ւն,
Գարնանային շքերթ,
Արևն աչքերն է կկոցում
Ու քայլում է մեզ հետ:

Կարծես պոկվեց մեր ձեռքերից,
Մեր շարքերից առույգ,
Եվ շողում է, շողում վերից,
Ինչպես անշեջ խարույկ:

Տղաները ալ ու պսպղուր
Դրոշներն են տանում,
Աղջիկները՝ գարնանաբույր
Ճյուղեր եղրևանու:

Նորից Մայի՜ս է, ցնծությո՜ւն,
Գարնանային շքերթ,
Արևն աչքերն է կկոցում
Ու քայլում է մեզ հետ:

— Խոտը քո պարտականությունը չէր,— և այդ կինը դուռը ծնկով հրեց, երեխաները դուռը ներսից բացեցին:- Դպրոցական ես՝ այլի դասերի՞դ կաց,— դռան միջից չուռ եկավ այդ կինը:

Տղան շտկվեց ու նայեց Ճրագթաթ սարը ծմակին. գյուղը ծածկելով նրա ստվերը եկել հասել էր տղայի ոտքերին:

—Դե որ դու էդ ես՝ մենք էլ էս ենք:— Գրկի փայտը նա չպրտելով թափեց:— Քո փետը մենք չենք վառում, մեզ պետք չի քո փետը:— Եվ ձեռքերը կրծքերի տակ խաչեց ու կանգնեց:— Ինչքան կանգնես՝ կանգնելու եմ,— ասաց այդ կինը,— կանգնելու եմ:

Դա խաղ էր թե հպարտություն, ինչ որ էր, բայց ավնվություն չէր: Այդ կինը կարծում էր միայն ինքն է: Աչքերից կրակ ու արցունք մաղթելով Արմեն, Արմիկ, Արմենակ, Արմո Մնացականյան անունով պատանին նայեց նրան, կայծույթը տղայի խեղդում էր, մինչ այդ կինը միայն աչքերն էր ճպճպացնում: Ճպճպացրեց-ճպճպացրեց, ձյան մեջ կանգնեց, հավի նման ոտից ոտ փոխվեց ու ասաց.

— Ի՞նչ է:

Կոկորդի գունդը տղան կուլ տվեց:

— Թե գիտես թե մենակ դո՞ւ ես,— բողոքեց տղան:

Չոր, թեփոտկոտ բերանը կիսաբաց՝ այդ կինը աչքերը թարթեց, գուցե հասկացավ, գուցե ամենևին էլ չհասկացավ, որ ինքը թեկուզ մայրն է, բայց գործ չունի նրա՝ տղայի և տղայի արանքում, կռացավ փայտերը հավաքելու, իսկ փայտերն ախպերիկն արդեն, դուռն ամեն անգամ փախվորած ճռռացնելով, մեկիկ-մեկիկ ներս էր տարել, և այդ կինը նայեց ու ասաց.

— Սառկի՞ր:

Տղային դա դուր եկավ:

Սակայն այդ կինը քիչ հետո եղբոր հետ շոր ղրկեց, որ ա… բերի գցի տղայի ուսերին: Երևի թե եղբայրը կանգ էր առել տղայի մոտ և չէր հասկանում՝ մոտենա՞, թե՞ չմոտենա, լռիկ ականջները թափանցիկ՝ այդպես կանգնած էր: Արևը տղայից ու եղբորից անցավ: Տղան եղբորը կարգադրեց տուն գնալ, բայց նա դարձյալ չէր հասկանում մոր պատվե՞րը կատարի, թե՞ եղբոր հրահանգը:

Չոր ճայթյուններ էին գալիս: Ճյուղերը կոտրվում էին միանգամից: Չէին ծալվում, մեջներն ասես սառույց էր, հենց ձեռք էին տալիս՝ ճռթալով կոտրվում էին: Արևը թռչելու հետ քիվի կաթիլը միանգամայն կտրվեց: Մեղրատանձու լանջին, որով դեպի վեր բարձրանում էր Ճրագթաթ ծմակի սառը ստվերը, ստվերի գալուց առաջ գոլ արևի մեջ բոխի էին անում, ճյուղերի մեջ կյանք չկար, հենց ձեռք էին տալիս՝ փշրվում էին: Տղան լսում էր ճյուղերի ընկնելու ձայնը և ցածր, երազում լսածի, հուշերում պահվածի նման գրեթե լուռ այն խոսակցությունը, որ կար բոխու վրայինի ու ծառի տակ ճյուղերը հավաքողի միջև: Հայկը, Հովիկը, Նորիկը, Ժորիկը՝

Սկիզբը՝ № 1, 2, 3, 4.




ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

չորսով երեք կով էին պահում— արևը թռչելու հետ սառնամանիքը սեղմելուց առաջ բոխ էին անում, մաքուր ցերեկով չէին կարող, որովհետև միայն արևն ու սառնամանիքը չէին, երրորդն էլ կար՝ միթևանի, չար, միաչքանի անտառապահը: Ո՛չ... մորը խաբել էին, թե Հայկին միայն տասն օրվա օգտական են տանում, հովիվներին պիտի օգնի ու-խարը Քոի հովիտը հասցնեն ու ետ գա, ու չկար, կատակով գուցե ասում էին՝ «ճամփեդ բաց է՝ գնա», բայց մենակ ինչպե՞ս գնար, գուցե ասում էին՝ «դպրոցը քո ինչի՞ն է պետք, Դանելանց Արտեմը քեզ էնքան հեքիաթ պատմի ո՛ր...» Վերնաշապկի տակ պարկը փորին՝ Հովիկը հիմա, արևի, պահակի ու սառնամանիքի արանքներում, պահպըհվում է մարագների մուտքերը, որպեսզի ճիշտ մայրկյանին մտնենք Ճրագթաթի մեծ առվերի հետ, ծեփվի մարագին ու դռան տակից հարդ դուրս տա: Չյունե մաքուր կաձանին նրա պարկից մի ծեղ չի ընկնելու, հայերենի ուսուցչուհին այդուհանդերձ, դիցական Հայկի հարդագողը պատմելիս... որ մեր Հայկ աստվածը ատրեստանցիների Բել աստծու մարագներից վիթխարի քթոցով հարդ է բերում իր եզների համար, քայլերը մեծ-մեծ դնելով դարման է բերում, և նրա հետքը Հարդագողն է աստղական երկնքից ծմակուտյան մեր երկինք... հայերենի ուսուցչուհին այդուհանդերձ, Հովիկի մալերին է նայելու: Վերևը՝ բոխու վրա և բոխու տակ, ուրեմն Նորիկն ու Ժորիկն էին: Գիտեին, որ չի կարելի խոսել, գիտեին, որ չոր այդ ճայթյունները արդեն ամբողջ գյուղի վրա մի մեծ խոսակցություն են, բայց Նորիկը եթե չխոսեր ու խոսեցներ Ժորիկին, ծառի տակ եղբայրը կսառչեր: Կտրած ճյուղերը նա իր ծառի վրայից ցաքուցրիվ հեռու էր նետում, որպեսզի Ժորիկը հավաքելու վազվզի և չսառչի: Ժորիկը վազում բերում էր ու կույտի կողքին ճագարի պես սառչում մնում:

Ճրագթաթի առվերը սողալով դանդաղ ելնում էր, վախվորած արևը առվերի առջև ետ-ետ էր անում դեպի սարերը: Նորիկն ու Ժորիկը դեռ արևի մեջ էին: Արևի մեջ էր մեկ էլ Քառանց բլուրը և նրանից դեսը՝ պապոնց կալի ծայրը: Պապոնց կալը ցածր էր, բայց Ճրագթաթ ծմակուտ լեռան կատարին լուսանցքի չափ կտրված մի տեղ կար. արևը խփվել ու բռնկվել էր պապոնց կալի ծերին: Ճիտակ մոմի պես ուղիղ՝ արևի մեջ կանգնած էր տատը: Տատի աչքը ճամփին էր: Հալևորը թոռներին առել գնացել էր խոտի: Հալևորի ծնկներում ուժ չկա, թոռները աղջիկներ ու երեխա են: Կալքարա սարի լանջը նրանց ճամփա՞ կտա, ջուրը ծակած ու խոտը փչացրած, պախրեն ու քամին ցաքուցրա՞ծ չեն լինի: Հալևորի կապած բլուրը ջուր չի մտնի, բայց խորը բացատը նրանց ճամփա՞ կտա: Տատն այդպես կանգնած էր կալի լույս բացատում:

Նախքան հրեշը... սարսափը... կացիններ ու պարաններ հավաքողը... միաչքանի-միթևանին կերևար և Քառանց բլուրից նրա առվերը թաղի գլխով կփռվեր Մեղրատանձու լանջին, տղան կգար, որ նա բլուրի ետևն է, մտնենում է տների անկյուններում պահվելով և հառնելու է միանգամից, խարանը խփելու պես... բայց տղայից առաջ տատն կգար նրա աներևույթ գոյությունը և, լուսե իր բացատում կանգնած, ոչինչ էլ չարեց, ոչինչ էլ չասաց, բայց ծառի վրա ու ծառի տակ Նորիկն ու Ժորիկը տապ արին իրենք իրենց մեջ: Եվ նրանց պարանները տապ արին և երկու կույտ բոխը: Տատի պես՝ այդպես թուխան է կգուշացնում, այդպես խոսում են ձուկն ու ձկնիկները: Նրանք նրա թոռները չէին, բայց երեխաներ էին, ինքը տատ էր, լավ չէր տեսնում, լավ չէր ջոկում, և այդպիսով բոլորն էին նրա թոռները:

— Բա էդ արևն ափսոս չի՞, որ դու մեջը կանգնել ես,— ասաց տատը, սակայն միթևանի-միակնանին դեռ չէր երևում, նրա սև, տափակ, թվում է թիթեղից կտրած կերպարանքը դեռ Քառանց բլուրին չէր:

— Ծառ է, մայրիկ հետ կտերևի... բոխի է,— ասաց տատը:— Բա երեխեք են, չէ՞: Ո՞ւր են նրանց հերերը, ո՞ւր են տարել նրանց հերերին:

Նա չէր նրանց հայրերին տարել, նրան իրեն էլ էին տարել մեծ պատերազմով, թևը կտրել, աչքը հանել, չարացրել ու շպրտել էին գյուղ... բայց տատըն այդպես ասաց ու իր կալի լուսավոր բացատում վառվող մոմի չափ շիտակ՝ մոռացավ նրա գոյությունը: Մինչ՝ նա արդեն հառնել էր բլուրին և նրա սարսափն ու առվերը ծեփվել էին Մեղրատանձու լանջին, ուր բոխի իր փոքրիկ շալակի ետևում նապաստակի պես տապ էր արել Ժորիկը և ծառի վրա քարացել էր Նորիկը:

Նա և տղան մի անգամ քիչ էր մնում հանդիպեին: Չառիթափի գլխից սահնակն արդեն թափ էր առնում և թափի սարսռուն հրճվանքն արդեն դողում էր տղայի մեջ՝ չառիթափի տակ ճանապարհի

ուղիղ մեջտեղը երևաց նա: Տղան սոսկաց: Այդպես սահնակով էլ թռչելու էին նրա երախը: Զուտ կուլրեկուլր, տղան կառչեց կացնի բնքից ու փկից և ճապաղվեց: Հետո ինքը գլխիվայր ճապաղված էր սարահետին, կացինը իր երկու ձեռքին ու դնչի տակ էր, ձնաքուք անելով սահնակը թռչում էր, շունը հաչելով վազում էր սահնակի կողքից: Ապա, ինքը հո՞ անտառ էր վազում, խրեց ու ձյան տակ կորցրեց կացինը, չհավանեց, եւ դարձավ տեղը փոխելու, բայց չգտավ... հետո իրեն խփում ու խփում էր դեպի Երկեն հողերի խանչերը, ուր գտնած, չէկ, արևոտ կաղնուտը ձյուն չուներ և հետք չէր, բռնի և հեռվից չէր երևացնի, քանի որ տղայի քաթանե շապիկն ու քաթան շալվարը կաղնեգունված էին կաղնու կեղևով: Տղան այն ժամանակ գյուղ մտավ կալերի կողմից, մարագների մոտ հանդիպեց Հովիկին, ու ախպերացան:

Մայրը սենյակից ելավ, դույլի կաթն արմունկին ու թթվի կանաչ մեծ ափսեն ձեռքին դուրս եկավ պատշգամբ, տղային չտեսնել ձևացնելով, քիվի տակով գնաց նկուղ, այնտեղ ափսեի մեջ կաղամբի թթու դրեց, և տղան լսեց թթվաջրի չռչռոցը, հետո դույլը կարտոլ էր ածում, և տղան լսում էր դույլի ձայները, հետո մառանի դուռը վրա քաշեց ու քիվի տակով եկավ, բակիքի դուռը ծնկով հրելիս չհամբերեց ու ժպտուն դեմքը տղային դարձրեց, բայց տղան չէր ժպտում, և խռոված աղջկա նման մայրը նույնպես մտավ ինքը իր մեջ: Սենյակի դուռը նրա առջև բացեց եղբայրը՝ հասցընելով թթվի ամանի տակից նայել տղային:

Քառանց բարձր բլուրից արևը թռավ, և անտառապահի սատանայական կերպարանքը տեղնուտեղը չքացավ, բայց նա այնտեղ էր: Փոքրացավ, խամրեց, հառավ նաև պապոնց կալի բացատը, մի վայրկյան լույսի մեջ էր միայն տատի ջարմաղ դեմքը, հետո հանգավ: Տատը երևի ասաց՝ «չեկան, չեն գալիս» ու կարծեց տուն է մտել, թանապուրը խառնում է, բայց խավարի մեջ կանգնած էր կալի ծայրին:

Խուլ, խլացվող, ասես բերանը փակած էին խցկում, մաշկի տակ ասես ոսկոր էր ցարդվում, ճըռթոց էր գալիս, Նորիկը ճյուղերը կոտրում էր բռան մեջ, բայց նրա ափը փափկություն չուներ, և ճըռթոցի փոխարեն ամեն անգամ խլանում էր նա ինքը: Գլխարկը պիտի քաշել ու գլխարկի մեջ կոտրել—այսպես, այսպես, այսպես: Կոտրած ճյուղերը պիտի այնպես շպրտել, որ նրանց պոչերը լուռ գետին խրվեն... տղան այդպես կաներ:

— Էդ ո՞վ է,— որոտացին Քառանց բլրից,— էդ ո՞ւմ յակուտն է ծառի վրա կկու կտրել:

Մեղրատանձու լանջին թաքուն ծիծաղեցին և ճրթոցը շարունակվեց, նապաստակն ասես ծառ էր կրծում՝ անընդհատ, հավասար ջեջտով, ասես ոչ թե ճրթոց էր, այլ անտառապահի լռության խարկանքը, Նորիկը մերկացնում էր բոխին: Չոր, անկենդան այդ բոխը կովերն առաջին օրերին չէին ուտում: Անտառում կովերի դեմ դարսած՝ ճյուղերը կովերի շնչից տաքանում ու մի քիչ ուռչում էին, և կովերն սկսում էին կամաց ուտել: Դուք ձեր խավարի մեջ զոռացեք, եթե հրացան ունեք՝ տրաքացրեք, խլեցեք բոլոր կացինները, ուրագները, ցաքատները, դանակները, պարանները- տղաների մեր բանակը միևնույն է պիտի կով պահի ու կով ծծելով ապրի:

Պապի-թոռների քարավանն այդ պահին խորը բացատից դենը, Կրհոռի կապերից էլ դենը, Կալքարա լանջերով-լանջերով, քանի դեռ արևը չէր թռել, գալիս էր: Պապը խոտը ամառն էր հնձել: Հնձել էր մանգաղով, քանի որ գերանդիով չէր կարողացել: Հնձել էր գերանդիով, քանի որ մանգաղով չէր կարողացել: Հնձել էր երկու շաբաթում, ամբողջ ամռանը հնձել էր, բայց դա մշակի մի ժամվա գործ էր: Մշակը մի ոչխար կուտեր ու այդքանը կհնձեր մի ժամում, պապն այնինչ հնձել էր ամբողջ ամռանը... բայց հնձել էր: Իր հոր ու իր հին, փափուկ, փարթամ, մաքուր խոտհարքում, որ Քարուտների տակ էր, բայց քարկոփկի յոթ հատիկ քար չէիր գտնի, պապն անկարությունից տնքացել էր: Պապն ասել էր. Անդրանիկ, Սիմոն, Ակոփ... ո՞ւր եք, կարում չեմ:

Երեխաներին չարչարելու դժվաց պապը երկնքից աստծու պատիժ էր սպասել, բայց կապել էր փոքր ու խնամքոտ շալակներ: Պապը Վարդիկին առաջ էր գցել, ասել էր. գայլերը որ դուրս են ելնում՝ առջևից ձյունը ճղած գնում է տղամարդը, հետո քույրիկները, ետևից պապն է քարշ գալիս: Է՛, ասել էր պապը, պարսից շահի քարվանը որ գնում է՝ էլի էդպես է, առջևից քուռակն է գնում, հետո քույրիկներն են գնում, վերջից քարշ է գալիս թույլ, պառավ, սատկելիք ձին... ուղտը: Բա, ասել էր պապը, շահի դայդեն էդ է: Դայդեն էն է, ասել էր Վարդիկը, դայդեն՝ սովորո՞ւթքը: Սովորությքը, կրկնել էր պապը, թե գիտես թե ես դպրոց չեմ գնացել,— վեյ՛ Վարդիկ, հո՛ Հեղինա, սե՛ Սոխակ, պե՛ պապի: Էշը թփիցը կապի, ասել էր Վարդիկը: Էշը քեռիդ ա, պոչը ձեռիդ ա, ասել էր պապը: Ծիծաղելուց հետո Վարդիկն ասել էր. դե որ էշը քեռիս ա՝ խոտը թող ինքը տանի, ես չեմ շալակում: Այո, ասել էր պապը, թող ինքը տանի ու մածունն էլ ինքն ուտի: Մածունն էլ ինքն ուտի, կրկնել էր Վարդիկը: Էշը բա մածուն կուտի՞: Կուտի, կուտի, ասել էր պապը, էդ ո՞նց է խոտը կշտանկի, բայց մածուն չի ուտի:

Բեռան տակ՝ պապը տնքացել էր, բայց Վարդիկի նվաղության վրա չէր արտասվել, քանի որ վշտանալու համար էլ պատճառներ են պետք, և այդ պատճառով էլ վիշտը թող նրանց պատահի, ովքեր վշտանալու պատճառներ ունեն: Պապն ասել էր. գնացեք, էդ խի՞ կանգնեցիք: Փայտե երկմատնանի թեթև, ողորկ, վաթսուն տարում ափերի մեջ հղկված եղանը պապը հենել և ուզեցել էր նայի՝ սայթաքել էր, նորից էր հենել՝ դարձյալ սայթաքել էր... փայտե երկմատնանի եղանը, ձեռնափայտի տեղ, պապը հենել, ոտը երեխաների կածանից վեր էր դրել ու նայել շալակների եկրով, ու թքել էր. «Թո՛ւ, թքեմ քո պատվին, անպատիվ»: Նա, դեմքը մորուքի մեջ կորած, մատը բերանին էր տարել՝ սո՛ւս:

Վարդիկը հետո ասաց. էն ա ո՞նց որ հարբած արջ ըլես: Հրայրը վախեցավ ու ասաց. հարբած արջը ո՞նց ա ըլում: Վարդիկը ասաց. էն ա գլուխն ընկնում ա ոտների արանքը, գնում-գնում, գլուխը

վրիցը վեր ա ընկնում: Արմենակն ասաց. դու տեսած կա՞ս: Վալոդիկի հայացքը ետ գնաց ու ասաց. ծը: Արմենակն ասաց՝ դու տեսել ես, դուք տեսել եք:

Մի գարուն ու մի ամառ հետո՝ աշնանը նրան սպանեցին, բայց պապն ու Վալոդիկը նայեցին իրար ու լռեցին: Սոխակն ամուսնացել ու մոռացել էր, այդ մասին հիշելու էր հետո երեխաներին հեքիաթ պատմելիս, Հեղինան մոր ու հորաքույրերի հետ գործում էր իր հարսանքի նախշուն գորգը, տղամարդկային այդ լուրերը այլևս նրանը չէին, իսկ պապն ու Վալոդիկը նայեցին իրար ու լռեցին: Նրա համար ամեն անգամ պատժիչ խումբ էր կազմվում ու ցրվում, բայց նրան պատժիչներ չէին սպանել. շփերթ՝ շռայլ, ուրախ, խռով, պարող, երեխաներից ու կանանցից չքաշվելով հենց. էնպես հայհոյող՝ Մուրադը հրացանով տվել ծառի վրայից գցել էր. ասել էր՝ «ես քու արյունը... բա դու մեղք չե՞ս, որ վախը փորումըդ ապրում ես» ու կրակել գցել էր: Ֆերմայի սայլից նա, կինոյի կապկի նման, հեքիաթի մանկագողի նման ցիլ-պանիր թոցրած՝ ծառի վրա ուտելիս էր եղել, Մուրադն ասել էր «սարսափը փորումըդ» ու խփել գցել էր՝ անայլի ցիլն ատամների մեջ: Մուրադին բանտարկեցին: Կարծում էին նրանք շատ են, Մուրադը թաքուն նրանցից մեկն է, նրան սպանել է, որպեսզի նրանց հետքերը թաքցնի: Դատը պարզեց, որ Մուրադը ուրիշների կյանքի նկատմամբ է այդպես շփերթ-շռայլ, բանտային իր օրերի վրա լացը գալիս է... դատն ուրիշ բան չպարզեց:

Այդ նույն աշնանը պապը ձի առավ՝ դսեղեցի անտառապահ Ալխոյենց Աղամի կողակ, պինդ, բարի, մուգ կարմիր ձին, որը վարգեցնելուց նեղանում էր, իսկ անտառապահի պաշտոնը գոռոզ սլացք էր ուզում Ծմակուտից Դսեղ ու Դսեղից կենտրոն: Արմիկն ասաց. անունը ի՞նչ է: Չի է, ասաց պապը. անունը Չի է, ինքը պիտի աշխատի, Վալոդիկն ու Արմիկը սովորեն: Վալոդիկը կարմնացավ հենց պապի նման. վո՞ւյ... անունն էն ա Ալխո ա, էլի, Ալխո:

Դարձյալ մի քիչ՝ և ռումին գերիներին Հովհաննես Թումանյանի անտառներից հանեցին, արձակեցին, և նրանցից ավելի հայրն սպասվեց: Ալխո ձիու հետ հայրը գնաց Քոհ կողմերը աշխատեց, մի բեռ ցորեն ու գարի բերեց: Թաղից՝ հացի հոտ եկավ: Մի քիչ էլ, մի քիչ էլ՝ և մեծ հորեղբայրը վերադարձավ անհայտություններից, ոչինչ չպատմեց անհայտությունների մասին, և Մնացականյան մեր թաղում պատերազմի հետքն ու հոտն էլ չըկար: Մեղրատանձու լանջին գառներ էին խաղում, ուլիկը քար էր գտել ու վրան կանգնել, Դսեղի հորաքույրը երեխաների հետ եկել էր իր աղջկության լանջերը, փոքր հորեղբայրը նամակ ու լուսանկար էր ղրկել և բանակայնորեն լուրջ ու մնացականյանորեն սիրելի էր... մաքուր, հստակ գարուն էր, և մեծ հորեղբոր Վալոդիկը պատանեց:

Արջը գալիս-գալիս ու գլուխը վեր էր գցում, գալիս-գալիս ու արջի գլուխը կախվում էր: Փախստականը մոտենում էր խոցելու՝ արջը գոռում ու սվինը կրծում էր: Արջը գնում-գնում ու գլուխը գցում էր: Այդպես՝ որ խոցի ու որ սվինը կրծի՝ պապի-թոռների դեմ մի անգամ էր եղել, բայց պարզ էր, որ խայտառակ այդ ճանապարհը նա անցել էր այդպես. արջը անընդհատ ետ էր դարձել նրան սպանելու՝ նա սարսափից մեռել ու սվինի ծայրով մի քիչ ճանկռել էր արջի լնդերը, բայց նրա հզոր կարաբինը չէր որոտացել, քանի որ... որոտա ի՞նչ ասի... ասի պատե՞ղ է ապրում փախստականի նրա խեղճ գոյությունը: Պատժիչ ջոկատի սարսափի և արջի սարսափի արանքում նա իրավունք չուներ: Խորովածի նրա կրակը չէր հուրհրալու, արդար հաղթանակի նրա ծուխը սյուն չէր խփվելու դեպի երկինք — արջի միսը նա լափելու էր հում-հում և փորի ցավերից գալարվելու էր լուռ: Նա ձյուն ուտելիս էր եղել, մատը դրել էր բերանին՝ այսինքն թե սուս, ինձ չեք տեսել, այսինքն թե՝ ես չկամ: Լանջնիվեր՝ պապը նայել էր նրա արյունոտ ճանապարհին, այսինքն թե՝ բա էդ ճանապա՞րհդ, որ Չալքարա կաղնուտներից բաց սարերով գալիս գնում է Քոշաքար: Նա աչքերը երկինքին էր դարձրել, այսինքն թե՝ գուցե ձյուն գա ծածկի մեր՝ խայտառակ ճանապարհը: Արջը գնում-գնում, բերանով մեկ ձյուն էր առնում — փախստականը բռան մեջ ծծում էր ձնագունդը:

Պապն ասել էր. կյանքի հազար դարդ կա, հազար դարդի կյանք կա, նրա դարդն էլ էդ է: Բաց, ապա՝ աղբյուրը երգում է, ամպը տրաքում է, լեռների արանքից քամին փախս է ընկնում ու կոտրում ծառերը, դարավոր կաղնին չի ամաչում ու իր վրա հառաչելով է կործանվում... Վալոդիկն ասել էր. վո՞ւյ, էդ հո կռունկ չի՝ որ դարդ ունենա, դարդեն քա նվագը չի՞: Պապն ասել էր. կռունկ է, բարձր, պիկ, ուրախ՝ նվագում է, բայց նրա կռունկն չի նվագելու, չի ծղրտալու, չի խաղալու:

(Շարունակելի)



# ՖԻՆԼԱՆԴԻԱ, ԼՃԵՐԻ ԵՐԿԻՐ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ







## 2. ՍԵՎՐԱՍԱԱՐԻ. ԹԱՆԳԱՐԱՆ ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

Գնում ենք տեսնելու ֆինների համար շատ թանկ ու սրտամոտ մի թանգարան: Անցնում ենք քաղաքի փողոցներով: Չափազանց մաքուր է: Եվ անսովոր բան՝ բոլորովին ծխողների չենք հանդիպում:

— Մի՞թե Հելսինկիում չեն ծխում,— հարցնում ենք գիդին:

— Փողոցներում ընդունված չէ, — ասում է գիդը:— Վերջին ժամանակներս հասարակական վայրերում նույնպես: Ընդհանրապես ծխելու դեմ ուժեղ պայքար է տարվում:

Մենք մոտեցել էինք կախովի կամրջին, որը քաղաքը կապում էր Ֆիննական ծոցում գտնվող մի փոքր կղզու հետ: Իսկ կղզին իր ամեն ինչով հենց եզակի թանգարանն էր, Սևրասաարին, որ արժանիորեն ստացել էր նաև երկրորդ անունը՝ թանգարան բաց երկնքի տակ: Պարզվեց, որ հելսինկցիների սիրելի զբոսավայրն է, որովհետև այդ փոքրիկ կղզում մարդ հնարավորություն է ունենում վայելելու ոչ միայն միջնադարյան ճարտարապետության գողտրիկ նմուշները, այլև հիանալու բնության գեղեցկություններով:

Կղզին եզերում է օղակաձև մի ծառուղի. երկու կողմերում 14—15-րդ դարերում կառուցված փայտե շինություններ են: Ահա «Աղջըկա օթևանը», ազնվազարմ օրիորդների ննջարանը: Պատուհանը համարյա կպած է տանիքին, որպեսզի օտար հետաքրքրասերները չհամարձակվեն ներս նայել: Դիմացը՝ հարուստի տունն է, ներքնահարկում՝ անասնանոցը: Ահա լյութերական եկեղեցին, որը հնադարյան ճարտարապետության սքանչելի մի նմուշ է: Կղզու մի հարմար ափին կապված են նավակները, որոնցով շատ դարեր առաջ մարդիկ հեռուներից եկել են այստեղ՝ մասնակցելու ժողովրդական տոնահանդեսներին: Դարերը հոսել են և շինությունների վրա թողել իրենց հետքը. փայտը սևացել է, ճաքճքել: Իրենց չափերով փոքր այդ հուշարձաններն ամբողջապես կանաչի ու ծառերի մեջ են թաղված: Իբրև ֆիննական ճարտարապետության նշխարներ, խստորեն պահպանվում են: Անձեռնմխելիությունը ավելի են շեշտում հաճախակի հանդիպող վայրի բադերը, փասիանները և սկյուռները:

---

Սկիզբը՝ «Պիոներ» № 4

# Գարուն

ՎԱՀԵՐԻ ԱՆԱՆԻԿՅԱՆ

Մաղիկների բուրմունքներից
խենթացել են մեղուները:
Թփի տակից
ինչ-որ մի ճավք
իր տավիղն է ահա լարել:
Ժայռին կպած մի մասրենի
ճարմնացել է,
մաքրամաքուր փրփուր հագել,
պլոկոծվել քամու քաղցր շշուկներից:
Ջյունամնան մի ճերմակ ամպ
կարապի պես լող է տալիս
երկնքի լուրթ ջրերի մեջ...




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

**Ո՞րն է մեր զրույցների նպատակը**

Այսուհետև, սիրելի՛ ընթերցողներ, մեր ամսագրի ամեն մի համարում կհանդիպեք այս վերնագրին: Եվ ամեն անգամ դուք առիթ կունենաք ծանոթանալու լեզվի հետ կապված մեծաթիվ ու բազմապան հարցերից որևէ մեկին, մեզ հետ միասին խորհելու դրա շուրջը և կարդալու պատասխաններն այն հարցերի, որ դուք՝ ընթերցողներդ, կարող եք ուղարկել մեզ:

Ի՞նչ նպատակ են հետապնդում մեր զրույցները. օգնել, որ մեր ընթերցողներն ավելի լավ տիրապետեն մայրենի լեզվին, ավելի լավ գրեն և մանավանդ՝ ավելի լավ խոսեն հայերեն:

Խոսե՞ն,— կարմանքով հարց կտան ձեզնից ոմանք,— դրանից էլ հեշտ բա՞ն, ո՞վ է, որ չի խոսում մայրենի լեզվով, այն էլ ամենավաղ հասակից: Այո՛, խոսում են, բայց **ինչպե՞ս**: Խոսել էլ կա, խոսել էլ: Բանն էլ հենց **ինչպես** խոսելն է, լինի այդ ամբիոնից, դաս պատասխանելիս թե սովորական զրույցի ընթացքում: Չե՞ք նկատել, թե ինչպես մեկն ամբիոնից խոսում է անհամ ու ձանձրալի, և մտածում եք, թե սա ե՞րբ պետք է, վերջապես, ավարտի իր ելույթը, բայց մեկ ուրիշը խոսում է հետաքրքիր, այնպես, որ դահլիճի ժխորը դադարում է, մարդիկ ուշադիր հետևում են նրա խոսքին: Կամ հենց առօրյա կյանքում. մեկն առակ է պատմում՝ ո՛չ մի տպավորություն, հետո լսում ես նույն առակն ուրիշի պատմելով՝ հարուցում է ուրախ քրքիջ:

Ո՞րն է գաղտնիքը, ինչի՞ մեջ է մեկի ուժը և մյուսի թուլությունը, ի՞նչն է հմայք տալիս մեկի խոսքին, իսկ մյուսի խոսքը զրկում որևէ հմայքից:

Սրանք հասարակ հարցեր չեն և սրանց պատասխաններն էլ չեն կարող պարզունակ ու հասարակ լինել: Մեր զրույցներն էլ նվիրված կլինեն հենց այդ հարցերին:

**Զրույց 1-ին. Խոսել նշանակում է մտածել**

Այո՛, ամենից առաջ պետք է իմանալ, որ խոսել նշանակում է մտածել: Լավ գրում ու խոսում է նա,

*Կոդին ամբողջությամբ արգելավայր է:*

*— Սկյուռները բավականաչափ երեսառած են,— ասում է գիդը,— կաղինը կույզ-կույզ են վերցնում:*

*Եվ, իրոք, նա ափի վրա կաղին է լցնում և մոտեցնում սկյուռին, ապա տապակով կաղինը մեկնում է մեզ՝ ո՞վ է ուզում սկյուռներին ու փափաններին հյուրասիրել:*

*Զարմանալի բան. սկյուռները մարդկանցից չեն վախենում, ուղղակի ափից վերցնում են կաղինը ու դնչիկները տմբտմբացնելով ուտում, ապա ուրունքածև փայլուն աչիկներով սպասողական նայում:*

*Բաղերն արտակարգ գեղեցիկ էին: Գլուխները՝ վառ կանաչ, վառ կապույտ, կուրծքը՝ շոկոլադի գույն, թևերը՝ մոխրագույն, իսկ վզերին՝ ճերմակ փետրամանյակներ: Նրանցից երկուսը շորորալով կողք-կողքի էին ման գալիս, իրար այնքան նման էին, միայն թե մեկը կաղ էր: «Խե՜ղճ, կաղ բադիկ»,— մտածեցի ես ու մի կաղին նետեցի նրա կողմը: Կաղ բադիկը կաղինն օդում որսաց: Այնպես որ՝ ես հանգստացա. դժվար թե կարողանան նրան բռնել: Անա այդ ժամանակ էր, որ խոսակցություն բացվեց այն մասին, թե ինչքան են տուգանվում մի սպանված բադի համար:*

*— Բավական շատ,— ասաց գիդը,— դրանով կարելի է խանութից 13—14 հավ գնել: Այնպես որ... չեմ հիշում այդպիսի դեպք:*

*Ստվերախիտ ծառուղին ողողվում է կղզու եզերքով, լսելով գիդի բացատրությունները, դիտում էինք Ֆիննական ծոցը, որի վրա լողում էին նավերը և ճախրում ճայերը: Ծառուղու նստարաններից մեկին արևկող էին արել ծեր ամուսինները, և նստարանի թիկնակին «բազմած» սկյուռը կաղին էր թոցնում կնոջ բաց ափից: Խոտերի մեջ բզկում էր խավոտ մեջքով սև մեղուն, բոլորովին անծանոթ մի միջատ, և ծառուղու երկու կողմերում կապտին էին տալիս մանուշակի ծաղկած թփիկները: Խոստովանում եմ, մանուշակների այդ առատությունը ինձ աններկայացրելի հույզում պատճառեց:*

ով լավ է մտածում, ունի մտածողության կուլտուրա: Եվ, ինչպես ամեն մի կուլտուրա՝ աշխատելու կուլտուրա, նվագելու կուլտուրա, կառուցման կուլտուրա և այլն, խոսելու կուլտուրան ևս կարիք ունի ամենօրյա մշակման: «Կուլտուրա» նշանակում է «մշակույթ», մի բառ, որ ոչ միշտ, բայց շատ հաճախ փոխարինում է «կուլտուրա» օտարամուտ բառին (կարող ենք ասել երաժշտական մշակույթ, թատերական մշակույթ, բայց չենք ասի՝ «ֆիզմշակույթ», այլ՝ «ֆիզկուլտուրա», չենք ասի՝ «մշակութային հեղափոխություն», այլ՝ «կուլտուրական հեղափոխություն»: Բայց սա՝ իմիջայլոց) :

Լեզուն մտածողության հետ կապված է անմիջաբար: Մի խոշորագույն գրող ասել է՝ նա, ով գրում է ինչպես պատահի, նշանակում է՝ մտածում է ինչպես պատահի: Սա վերաբերում է նաև խոսելուն:

Ավելին՝ մտածել արդեն իսկ նշանակում է խոսել, միայն թե՝ մտքում խոսել: Մարդիկ առհասարակ մտածում են մտքում խոսելով: Համոզվելու համար փորձեք որևէ բան մտածել առանց խոսքերի: Ինչքան էլ ջանք դնեք՝ բան դուրս չի գա: Ասենք, գիշերը երազ եք տեսել և առավոտյան ուզում եք մտաբերել, թե ի՞նչ եք տեսել: Դուք մտաբերում եք խոսքերով՝ եղավ այսպես ու այսպես, ձեր տեսածը դուք հիշում և մեկնաբանում եք խոսքերով: Դա կարող եք նաև գրի առնել, որի շնորհիվ ձեր մտածմունքային խոսքը կդառնա գրավոր խոսք: Կամ, ասենք, դպրոց եք գնում դասը լավ չսովորած: «Ի՞նչ լավ կլինի, որ այսօր ինձ դաս չհարցնեն»,— մտածում եք դուք: Մտածում եք խոսքերով, անպայման խոսքերով, որովհետև այլ կերպ հնարավոր չէ:

Լեզվագետները սա կոչում են «ներքին խոսք»: Խոսքի մյուս երկու տեսակներն են «դիալոգային» (կամ երկխոսային՝ սա արդեն խոսակցությունն է երկու կամ ավելի մարդկանց միջև) և «մոնոլոգային» (մենախոսական), երբ խոսում է մի մարդ, ասենք՝ դաս է պատասխանում, զեկուցում է կարդում, դաս է տալիս, իսկ մյուսները լսում են:

Հիմա կարող եք հարցնել՝ ինչ կա որ, խոսքի այդ բոլոր տեսակներին էլ ամեն մարդ տիրապետում է, ո՞վ է, որ չի մտածում մտքում, ո՞վ դաս չի պատասխանում կամ վիճում ընկերների հետ: Այո՛, իրո՛ք այդպես է: Բայց ինչպե՞ս եք կարողանում ձեր խոսքով համոզել ու համակել ձեր ունկնդիրներին, զրուցակցին, ձեզ հետ վիճողին, և կարողանո՞ւմ եք արդյոք:

Պետք չէ վստահ լինել, թե դուք տիրապետում եք խոսքի կուլտուրային ինչպես հարկն է: Պետք չէ, որովհետև դա մղում է ինքնահանգստացման, իսկ դա զարգացման, կատարելագործման առաջին թշնամին է: Տիրապետման այդ ընթացքը վերջ չունի: Զուր չէ, որ ռուս գրող և լեզվագետ Լև Ուսպենսկին գրում է. «Լավ խոսել մարդ սովորում է ամբողջ կյանքում, առաջինից մինչև վերջին օրերը: Ես 76 տարեկան եմ, բայց դեռ էլի կատարելագործում եմ իմ խոսքի երկու տեսակն էլ՝ և՛ գրավորը, և՛ բանավորը»:

Իրո՛ք այդպես է: Սովորել, կատարելագործվել հարկավոր է միշտ, անընդմեջ, բոլոր հասակներում: Բայց բոլոր հասակներում չէ, որ դա նույնքան դյուրին է: Իսկ ե՞րբ է ավելի դյուրին, ո՞ր հասակում:

Մեր հաջորդ զրույցը նվիրված կլինի դրան:

*Այդ մանուշակները «հայտնաբերելու» ժամանակ էր, որ ես մի մեծ սխալ թույլ տվեցի. պոկեցի մի մանուշակ և մոտեցա գիդին՝ «Ճիշտ և ճիշտ նույն ծաղկից, նույն բուրմունքով աճում է նաև Հայաստանում»,— ասացի ես: Եվ այդ ժամանակ գիդը աչքերը լայն բացելով և վախեցած ասաց.*

*— Արգելվա՛ծ է, արգելվա՛ծ է: Վայրի ծաղիկներ քաղելը խստիվ արգելված է: Թաքցրե՛ք պայուսակի մեջ:*

*Հաջորդ օրերին, երբ ես ֆիննական քաղաքներում, ապա նաև Շվեդիայում հանդիպում էի մանուշակի բույլերի, ամաչում էի իմ քաղած մի հատիկ ծաղկի համար, և ափսոսանքով մտածում, թե Հայաստանում այդ քնքուշ ծաղիկը ինչքա՜ն է նվազել, որ նույնիսկ հասել է ոչնչացման եզրին: Եվ հիմա նորից ականջներումս զնգում է գիդի ձայնը նախ Սևրասաարիում, ապա Այնոլայում, և էլի ուրիշ տեղեր. մանուշակն արգելվա՛ծ է քաղել, ձնծաղիկն արգելվա՛ծ է, հովտաշուշանն արգելվա՛ծ է... Արդյունքը՝ քայլում էինք արահետներով, հմայված նայում բույլ-բույլ մանուշակներին և զգուշանում էինք, որ ոտքերի տակ չտրորենք: Ինչպիսի՜ բավականություն զբոսնել ծաղկած մարգագետիններում: Այդ հաճույքը երբևէ կարելի՞ է փոխարինել դաշտային ծաղիկների այն մեծ փնջերով, որոնք անխնա քաղում էին մեր հանրապետության ամառանոցներում և գյուղական վայրերում հանգստացողները: Այդպիսի փնջերով էի տարված, որ ավարտին էր մոտենում մեր զբոսանքը Սևրասաարիում: Դիմացից երևում էր կախովի կամուրջը, իսկ գրպանումս դեռևս վեց կաղին կար: Ես դրանք զգուշությամբ դրեցի ծառի կոճղին, մտածելով, որ քաղցած սկյուռիկի համար չքեղ կերակուր կլինի: Կամրջի վրա ձկնորսը կարթը ջուրն էր գցում և փոքրիկ տղայի հետ սպասում էին շիղաձկան հայտնվելուն: Ճայերը ճախրում էին, ապա վայրէջք կատարում ափամերձ ժայռերին: Եվ դա այնքան բնորոշ պատկեր էր ֆիննական ջրերի համար:*

*(Շարունակելի)*

# Մոր ժպիտը

ԴԻԱՆԱ ՌԻԿԼԵԲԱ

Մայրական ժպի՛տ, դու քնքուշ ու լուռ
Եվ փափուկ ինչպես աղավնու փետուր,
Դու երկնքի պես աստղալից ու խոր
Եվ արևի պես տաք ու լուսավոր:

Ես օրորոցում քո շողն զգացի
Եվ զանգակի պես ուրախ զնգացի,
«Մայրի՛կ» կանչեցի մայրենի լեզվով,
Եվ իմ աշխարհը սկսվեց քեզնով:

Իմ մանկությունից մնացել է ինձ,
Մա՛յր, քո ժպիտը լույսի պես թովիչ,
Եվ բոժոժների զնգոցով նորից
Քո երգը հավետ ուղեկցում է ինձ:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆԻ

# Գարնանային ամպրոպ

ԱԳՆԻՅԱ ԲԱՐՏՈ

Թխկենին է ծաղկել ձորում,
Թխկենին է ծաղկել ձորում,
Ճերմակ-ճերմակ շորեր հագել,
Օրորվում է ու շորորում:

Ու թխկենու ճերմակ կանչով
Զորս աղջիկներ ոտաբոբիկ
Այգիներով ու կանաչով
Փախան մտան ձորը մոտիկ:

Սակայն ծառին դեռ չհասած՝
Խուլ որոտաց երկինքն ահա
Ու զիգզագվեց մի շեկ կայծակ
Կուտակ-կուտակ ամպերն ի վար:

Եվ ավելի ահեղ թնդաց
Ամպրոպը մութ երկինքներում.
«Ո՛չ ոք, ո՛չ ոք թող մոտ չգա,
Թող ձեռք չտա՛ իմ թխկենուն»:

Թարգմ. ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆԻ



# Նամակը

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

*Տանը՝ քիմիայի գիրքը թերթելիս, Ռուզանը հանկարծ տեսավ ծրարը: Սովորական ծրար էր, չփակված... Ակամայից նայեց շուրջը, հետո կզուշությամբ հանեց միջինը, քառածալ մի թուղթ՝ մեջը երիցուկի ճերմակ թերթիկներ, վրան՝ գլխագրերով գրած «Ձեր դասարանի Իքսից»:*

*Անես հանգանքի մեջ բռնված, Ռուզանը մի պահ կորցրեց իրեն:*

*Առաջին բանը, որ արեց՝ ծրարը պահելն էր: Հետո սկսեց մտածել, թե ո՞վ գրած կլինի: Աչքի առջևով մեկ-մեկ անցան իրենց դասարանի տղաները. Արմե՞նն է, Ռուբի՞կը, Գևո՞րգը, Աշո՞տը... Թե՞ Վազգե՞նը, նա շարունակ ինչ-որ բան է ուզում մեկ՝ գիրք, մեկ՝ տետրը, մեկ՝ գրիչ: Բացակայած օրվա դասերն էլ անպայման իրենից է գալիս հարցնելու: Իսկ գուցե Լևո՞նն է. նա միշտ օգնում է իրեն հանրահաշվից: Անցյալ օրն էլ կարծես ժպտում էր մի տեսակ...*

*Գուցե Աշո՞տն է. ինչո՞ւ էր վերջին էքսկուրսիայի ժամանակ անպայման ուզում իր կողքին նստել ավտոբուսում...*

*Թե՞ Ռուբիկն է, ակնոցավոր, գիտունիկ Ռուբիկը: Մեկ-մեկ, երբ Ռուզանի հայացքը պատահաբար ընկնում էր նրա վրա, տեսնում էր, թե ինչպես է նա ակնոցների ետևից սևեռուն նայում իրեն: Ռուբի՞կն է...*

*Հաջորդ օրը, դպրոցում, դարձյալ մտածում էր, մանավանդ որ տղաներն էլ տեսադաշտում էին:*

*Մինչ Ռուզանը ուշադիր նայում էր Լևոնին, վերջինս կատակով նետեց՝ հը, ճանաչեցի՞ր... Ռուզանը շիկնեց, կախեց գլուխը:*

*Երկար մտածում էր՝ ասի՞ Կարինեին, թե՞ ոչ: Կարինեն ինքը մոտեցավ նրան և մտերիմ ընկերուհու իրավունքով նկատեց.— Չլինի՞ հիվանդ ես, մի տեսակ ես ինչ-որ...*

*— Հիվանդ չեմ,— ասաց Ռուզանը,— ես էլ չգիտեմ ինչ է:*

*— Տնայինը գրե՞լ ես,— շարունակեց Կարինեն,— տո՛ւր արտագրեմ: Երեկ էլի քույրս էր եկել երեխայի և ամուսնու հետ, չհասցրի:*

*— Տնայի՞նը,— ցրված կրկնեց Ռուզանը,— այո՛, այսինքն ո՛չ, չեմ գրել, չէ, գլուխս ցավում էր:*

*Մի պահ Ռուզանը ցանկացավ ասել նրան, չէ՞ որ մտերիմներ են, միմյանց բոլոր «գաղտնիքները» գիտեն:*

— Ինձ ինչ-որ բա՞ն ես ուզում ասել,— առաջ տարավ Կարինեն,— հը՞, Ռո՛ւզ...

Ռուզանը շփոթվեց, կարմրեց, հոգու խորքում ամաչում՝ էր, որ այդպիսի մի գաղտնիք թաքցնում է իր ամենամտերիմ ընկերուհուց:

Երկու օր անց Ռուզանին թվում էր, թե ինքը նամակի հեղինակին գտել է. համոզված էր, որ նամակը գրել է Լևոնը: Այո՛, այ՛, ֆիզկուլտի ժամին նա գտել ու չէր տալիս Ռուզանի մազերի ճարմանդը:

Տեսնելով Ռուզանի իրեն ուղղված տարօրինակ հայացքները, Լևոնն ինքն էլ սկսեց մի տեսակ խրտնել: Հանրահաշիվը բացատրելիս կորցնում էր մտքի թելը:

Կիրակի օրը Ռուզանը վճռեց, որ հաջորդ առավոտ ամեն ինչ կպատմի Կարինեին: Ամեն ինչ, թե երբ և որտեղ գտավ ծրարը, թե ինչ կար նրա մեջ և ինչ էր գրված, և որ երկար մտածելուց հետո իմացավ, որ Լևոնն է:

Երկուշաբթի օրը մեծ դասամիջոցին Ռուզանը խորհրդավոր թևանցուկ արեց Կարինեին ու տարավ պատուհանի մոտ: Շիկնած, անընդհատ աչքին ընկնող անհնազանդ խոպոպն ուղղելով, հուզմունքից թրթռացող ձայնով նա պատմում էր...

Կարինեն լսում էր նրան...

Երբ Ռուզանը վերջացրեց, Կարինեն մեկ էլ հանկարծ կերպարանափոխվեց և սկսեց բարձր քրքջալ:

— Ռո՞ւզ, այդ ծրարը ախր ե՞ս եմ դրել գրքիդ մեջ...

Ռուզանը չհավատալով, զարմացած նայեց նրան, նայեց էլի, շիկնեց, չէր կարողանում ուղիղ նայել ընկերուհու աչքերին:

— Ինչո՞ւ էիր կարծում, թե տղա է արել...

— Չգիտեմ,— կառչվա պես ասես հանցանքի մեջ բռնված խոսեց Ռուզանը:

Նա չգիտեր ինչպես դուրս գար ծիծաղելի վիճակից և խռովեց.

— Կարինե՛, ոչ ոքի այս մասին՝ ո՛չ մի խոսք, եթե իսկական ընկերուհի ես, լա՞վ...

— Իհարկե... իհարկե,— եռանդով վրա բերեց Կարինեն. կկարողանա՞ իրոք՝ «ոչ ոքի, ոչ մի խոսք», եթե չկարողանա՝ կկորցնի մտերիմ ընկերուհուն, եթե կարողանա... եթե կարողանա, լավ կլինի թե՛ ընկերուհու, թե՛ իր համար:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# Անտառի նահապետը

ՀԱՆԱԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ



Բնությունն արթնանում էր ձմեռային խոր քնից:

Բողբոջնե՞ր, բողբոջիկնե՞ր... Նորածիլ թավիշ կանաչ՝ մանկական աչիկների նման պլշած ու լացակումած:

Ինչքա՞ն խորհրդավոր ու հմայիչ, անլսելի ձայներ, որոնք երբեմն ընդհատվում էին թևավորների սրտահույզ երգով:

Ահա և կաղնուտը: Այստեղ կա մի հսկա, շատ բարձր ու ճյուղատարած կաղնի:

Կաղնի՛, այդ ինչպե՞ս ես ժայռը ճեղքել այդքան խոր, հազարաճյուղ հաստ-հաստ արմատներ խրել նրա մեջ, ժայռն առել ուժեղ մագիլներիդ մեջ:

Հին ես դու, բայց թարմ են քո արմատներն ու կենսունակ՝ բնության օրենքով: Ուժեղ ծառը շատ երկար ու կայուն է աճում:

Ի՞նչ փոթորիկներ են անցել գլխովդ, դարեր շարունակ, շանթահար փոթորիկներ, և դեռ ինչքա՞ն են անցնելու...

Ով ասես չի կռվել քո դեմ, քո մեջքին կացնի անողոք հարվածը վերքեր է բացել, ճյուղերդ ջարդվել են ու կախվել, բայց նոր շիվեր ես տվել և հաստատորեն ձգվել դեպի վեր: Դու քո համառությամբ հաղթել ես բոլորին... Նույնիսկ ժամանակն է կքծկըվում քո առաջ և զարմանքով նայում է քո հավերժական նորոգումներին:

Լա՞վ է, անտառի՛ նահապետ, որ մենակ չես:

Մենակ ապրող կաղնին ավելի շուտ է ջարդվում, իսկ մեծ անտառում ապրողը՝ ընդհակառակը: Ինչո՞ւ. թիկունք են կանգնում մեկը մյուսին, պատ ու պատնեշ դառնում փոթորիկների առաջ:

Կաղնի՛, դու հյուրասեր ես տարվա բոլոր եղանակներին, կյանք ես անթեղում քո շուրջ-բոլորը:

Քեզանից շրջահայացը, երևի, չկա աշխարհում: Քո տերևներն ուշ են թափվում և դուրս են գալիս ուշ, բայց հաստատորեն: Նայում է գեղջուկը քեզ և որոշում՝ ցանքն սկսի՞, թե՞ դեռ սպասի:

Կաղնի՞, կաղնի՞, մեր չարքաշ, մեր տոկուն պապերի կարոտն էլ քեզնից ենք առնում:

Անտառի՛ նահապետ, հավե՞տ դալար մնաս:



Լուսանկարը՝ ՎԱՆ ԱՐՅԱՆԻ

# ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆ

## (ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԸ)

Սովետական նշանավոր գրող Մարիետա Շահինյանն արդեն իննսուն տարեկան է:

Այդ իննսուն տարիներից յոթանասունհինգը նա նվիրել է գրականությանը, երեք քառորդ դար շարունակ հուզմունքի ու հիացմունքի երջանիկ պահեր պարգևելով ընթերցողներին:

Նա սովետական կարգերը դիմավորեց արդեն որպես անվանի պոետ, իսկ քսանական թվականներին գրեց իր առաջին սովետական վիպակը՝ «Փոփոխությունը», որի ամենամեծ գնահատականը եղավ Վլադիմիր Իլյիչ Լենինի դրվատանքի խոսքերը:

Մարիետա Շահինյանի գրչին է պատկանում սովետական առաջին հակաֆաշիստական արկածային վեպը՝ համաշխարհային ճանաչում ստացած «Մես-Մենդը»: Բանվոր դասակարգի կյանքը պատկերող սովետական առաջին վեպերից է նրա «Հիդրոցենտրալը», որ նվիրված է Ձորագեսի հիդրոշինարարների կյանքին:

Շահինյանը, արհամարհելով դժվարությունները, ճամփորդել է նախասովետական Հայաստանում՝ ձիով, սայլով, ինչով պատահել է, ապա ոտքի տակ է տվել ամբողջ Սովետական Հայաստանը և գրել «Ճանապարհորդություն Սովետական Հայաստանում» գիրքը, որը Հայաստանի մասին երբևիցե գրված ամենահրաշալի գրքերից է: Այդ գրքի համար նրան շնորհվել է պետական մրցանակ:

Գրողի և հետազոտողի նրա վիթխարի տաղանդը հատկապես ցայտուն է դրսևորվել չորս մասից բաղկացած Լենինապատումը գրելիս: Հավատարիմ իր գրական սկզբունքին՝ Մարիետա Շահինյանը վիթխարի փաստական նյութ է ուսումնասիրել, տասնամյակների ընթացքում շրջել է մեր երկրի ու արտասահմանի այն բոլոր վայրերում, որտեղ եղել է Վլադիմիր Իլյիչը, քրքրել է այդ վայրերի բոլոր արխիվները, և ստեղծել համաշխարհային Լենինապատումի ամենապայծառ էջերից մեկը: Լենինապատումն արժանացել է լենինյան մրցանակի:

Պետական և լենինյան մրցանակների դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի հերոս Մարիետա Շահինյանն այսօր էլ, չնայած պատկառելի տարիքին, աշխատում է ստեղծագործական չնվազող եռանդով: Նրա ապրած յուրաքանչյուր օրն ու նրա յուրաքանչյուր ստեղծագործությունը լավագույն օրինակն են այն բանի, թե ինչպես պետք է գնահատել ժամանակը, ինչպես պետք է ապրել ու աշխատել:

# ՊԵՏՐՈՍ I-Ը ԵՎ ՀԱՅԵՐԸ




ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

XVIII դ. I քառորդին Պետրոս Առաջինը ճակատամարտ ճակատամարտի ետևից շահելով, ընդարձակում էր իր տերության սահմանները: «Այդ իսկապես մեծ մարդը,— նրա մասին գրել է Ֆ. Էնգելսը,— առաջինն էր, որ լիովին գնահատեց Ռուսաստանի համար բացառիկ նպաստավոր իրադրությունը Եվրոպայում, նա պարզ նշմարեց, ծրագրեց և սկսեց իրագործել ռուս քաղաքականության հիմնական գծերը...» Պետրոս Առաջինի համբավը հասավ նաև Հայաստան, փրկության հույս արթնացրեց պարսկական և թուրքական լծի տակ գտնվող հայ ժողովրդի սրտում: Հայերից առաջինը Իսրայել Օրին 1701 թ. հոկտեմբերի 7-ին կանգ-լեր Ֆ. Գոլովինի դղյակում անձամբ հանդիպեց Պետրոս Առաջինին և նրան հաղորդեց օտար տիրապետությունից ազատագրվելու հայերի անմար փափագը և պայքարի պատրաստակամությունը, խնդրելով այդ գործում Ռուսաստանի ռազմական օգնությունը: Մտադիր լինելով նվաճել Կասպից ծովի առափնյա շրջանները, Պետրոս Առաջինը խոստացավ աջակցել անդրկովկասյան ժողովուրդների ազատագրական պայքարին, ստեղծել Ռուսաստանի հովանավորության տակ գտնվող հայ-վրացական թագավորություն, որը, միաժամանակ, Ռուսաստանի հարավային սահմանների համար հուսալի պատնեշ կհանդիսանար թուրքական և իրանական հարձակումներից:

1709 թ. Օրին ժամանեց Հայաստան: Նա եղավ Էջմիածնում, Ղարաբաղում և Սյունիքում, Պետրոս Առաջինի խոստումով ոգևորեց հայ ազատագրական շարժման մարտիկներին: Արժեքավոր տեղեկություններով Մոսկվա շտապելիս Իսրայել Օրին 1711 թ. մահացավ Աստրախանում, սակայն այդ ցավալի փաստը անգամ արդեն անկարող էր խզել Պետրոս Առաջինի և հայերի միջև հաստատված կապը: 1715 թ. Անդրկովկաս եկավ ռուսական դեսպան Ա. Պ. Վոլինսկին, որին Պետրոս Առաջինը հանձնարարել էր ծանոթանալ ճանապարհներին և տեղական պայմաններին, անդրկովկասյան ժողովուրդների, և հատկապես հայերի, Ռուսաստանի նկատմամբ ունեցած վերաբերմունքին: Հայերի հետ Պետրոս Առաջինի կապը պահպանում էին Իսրայել Օրու զինակից Մինաս Վարդապետը և Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանը: Վերջինս 1716 թ. օգոստոսի 10-ին Պետրոս Առաջինին հղված իր նամակում գրում էր. «...երբ Ձերդ գերազանցությունը կբարեհաճի սկսել ռազմական գործողությունները, նախապես թող տեղեկացնի մեզ, որպեսզի մենք պատրաստ լինենք և կարողանանք ժամանակին ընդառաջ ուղարկել մեր զինված ուժերը»:

Հայերը հավատում և սպասում էին ռուսական բանակին: Հայաստանում կազմավորվում, համալրվում և աճում էին ինքնապաշտպանական զինված ջոկատները: Ղարաբաղում նշանավոր էին Մեծ սղնախ և Փոքր սղնախ անվանումը ստացած զորակայանները, որոնք կենտրոնացնում էին մոտ 15 հազար զինված աշխարհազորային: Դրանք հետագայում միավորվեցին Ավան Յուզբաշու ընդհանուր հրամանատարության ներքո: Սյունիքում և Ղափանում կազմակերպված ջոկատների առաջնորդներն էին Թորոսը, Պապը, Տեր-Ավետիսը, Փարսադանը, իսկ ավելի ուշ՝ Դավիթ-Բեկն ու Մխիթար սպարապետը:

Հաղթանակով ավարտելով հյուսիսային պատերազմը, Պետրոս Առաջինը 1722 թ. ամռանը Վոլգա գետով լողաց Աստրախան: Նույն թվականի հուլիսի 18-ին, ռուսական բանակը ցամաքով, իսկ նավատորմը Կասպից ծովով շարժվեցին հարավ՝ դեպի Անդրկովկաս: Խանդավառված հայերն ու վրացիները ազգային-ազատագրական պայքարի դրոշ բարձրացրին: 1722 թ. սեպտեմբերի 22-ին Գանձակի մոտ, Չոլակ անունը կրող վայրում, տեղի ունեցավ հայ և վրաց զորագնդերի միավորումը: Մինչ այդ Պետրոս Առաջինի հանձնարարությամբ Թիֆլիս էր ժամանել իշխան Պ. Ա. Թուրքեստանովը և հայտնել, որ ռուսական կայսրը վրացիներին

և հայերին պատվիրում է իրենց զինված ուժերով ընդառաջ գնալ ռուսական բանակին, երբ վերջինս կմոտենա Շամախի քաղաքին: Հայ-վրացական միացյալ բանակը՝ Քարթլիի թագավոր Վախթանգ 6-րդի և Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանի գլխավորությամբ, ողջ աշուն տեղեկություն էր սպասում ռուսական բանակից: Սակայն ռուսական զորքերը հասան մինչև Դերբենդ, նրանց հետագա առաջխաղացումը ընդհատվեց պարենամթերքի պակասի և այլեկոծությունների հետևանքով նավատորմի կրած վնասների պատճառով: Պետրոս Առաջինը հայերին և վրացիներին խոստացավ հաջորդ տարի շարունակել պատերազմական գործողությունները:

Սակայն Հայաստանում արդեն բռնկվել էր ազատագրական պայքարը: Ղարաբաղում և Սյունիքում ապստամբները ոչ միայն դադարեցին հարկ վճարել, այլև դուրս քշեցին խաներին ու բեկերին և այդ շրջանները հայտարարեցին անկախ: Երևանի խանի 1723 թ. Ղարաբաղ կատարած արշավանքը ավարտվեց խայտառակ պարտությամբ: Պարտությամբ ավարտվեցին նաև Ղարաբաղից դուրս քշված խաների զինված գրոհները: Սյունիքում հաջողությամբ էին գործում Դավիթ-Բեկի ջոկատները:

1723 թ. ռուսական բանակը վերսկսելով ռազմական գործողությունները, գրավեց Բաքուն, ռուսական նավատորմը հասավ Կասպից ծովի հարավային ափերը: Թվում էր մոտ էր պարսկական լծից Արևելյան Հայաստանի ազատագրումը, բայց նույն թվականին Անդրկովկաս ներխուժեցին թուրքական զորքերը: Նրանք 1723 թ. ամռանը գրավեցին Թիֆլիսը: Հայ ժողովրդի գլխին նոր արհավիրքի վտանգ կախվեց:

Պետրոս Առաջինը պատրաստ չլինելով պատերազմ մղել նաև Թուրքիայի դեմ, դադարեցրեց իր զորքերի առաջխաղացումը: Հայերին ոգևորելու և Ռուսաստանի հանդեպ նրանց հավատը վառ պահելու նպատակով, Պետրոս Առաջինը Հայաստան ուղարկեց պետերբուրգցի հայ վաճառական Իվան Կարապետին: 1724 թ. սկզբին Ղարաբաղ ժամանած կայսերական պատվիրակն իր հետ բերեց հայ ժողովրդին ուղղված Պետրոս Առաջինի հրովարտակը, որով նա հայ ժողովրդին վերցնում էր իր հովանավորության տակ:

Հայերը զենքով դիմավորեցին թուրքական բանակներին: Գանձակի, Կարբիի, Լոռու և Երևանի պաշտպանությունների, Հալիձորի և Մեղրիի ճակատամարտերի ժամանակ հայերի ցուցաբերած քաջությունն ու անձնազոհությունը, որպես հերոսության անկրկնելի դրվագներ, հավերժացան հայոց պատմության էջերում:

1725 թ. հունվարի 28-ին Պետրոս Առաջինը մահացավ: Հայերը այդպես էլ չստանալով Ռուսաստանի օգնությունը, պարտություն կրեցին: Սակայն արդեն դրված էր այն մեծ գործի սկիզբը, որն իրականացավ մեկ դար հետո:

## ԾԻՏԸ

Ծտի կտցին խոտի ծիլ է,
Գարնան զալն է մեզ հուշում,
Սարից այն կողմ ցուրտ ձմեռն է
Անհետացել մշուշում:

Ծտի կտցին մի ծիվ-ծիվ է,
Հուշ մնացած պապերից,
Ծտի լեզվին երգի ծիլ է՝
Սկիզբ առած տատերից:

Թփի վրա ծտի բույնն է՝
Հյուսված դալար խոտերից,
Ճյուղով, ծաղկով պատած տունն է՝
Երգեր կախված պատերից:

Բնի ներսում նախշուն ձուն է՝
Ցեղի ուղին երկարող,
Բմբուլապատ անկողինն է,
Ծտի բույնը տաք պահող:

ԳՈՒՐԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ

## ԻՐԻԿՆԱՄՈՒՏ

Մայրամուտին սարի լանջից
Իջավ մեղմիկ հովը բուրյան,
Նրա քնքուշ պաղ համբույրից
Սեզերն ասես քնից ելան:

Քնից ելան, պար բռնեցին
Ու պարեցին հովերի հետ,
Ծփանք տվին, ալիքվեցին,
Ինչպես մարմանդ, կանաչ մի գետ:

Մթնում կորան սար ու ձորեր,
Թռչունները մտան խոր քուն,
Գետն է միայն, որ չի քնել,
Վշշում է դեռ ձորի խորքում:

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

***

Ջուրը ցցեմ՝ թաց չլինի,
Մեծեմ՝ լաց չլինի:

(Մմղիտռ)

***

Առանց ցանել դուրս է գալիս,
Դրամով ենք հնձել տալիս:

(Ճմզեոր)

ՌՈՍԿԱՆ ԱՂԱԲԵԿՅԱՆ
Թումանյանի շրջան,
գյուղ Թումանյան

# ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍԻՐՈ ԵՎ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

(Օսմանյան Թուրքիայի լծից Բուլղարիայի ազգային ազատագրության 100-ամյակի առթիվ)

Հարյուր տարի է անցել այն օրից, երբ ավարտվեց ռուս-թուրքական պատերազմը, որը Բուլղարիային բերեց երկար սպասված ազատությունը օսմանյան Թուրքիայի ծանր լծից: Ի պատիվ հերոսամարտերի, ի հիշատակ հարյուրավոր ու հազարավոր անհայտ հերոսների՝ ռուսական զինվորների և բուլղարական աշխարհազորականների, Բուլղարիայում կանգնեցվել է մոտ երկու հազար հուշարձան, որոնք սերունդներին հիշեցնում են մարդկանց անօրինակ քաջության, երկու եղբայր ժողովուրդների արյունով կռված բարեկամության մասին:

Քչերին է հայտնի համաժողովրդական սիրո և երախտագիտության այդ խորհրդանիշների ստեղծման պատմությունը: Անցած դարի 90-ական թվականներին և մեր դարի առաջին տասնամյակում համաժողովրդական հատուկ կոմիտեի նախաձեռնությամբ, որին ղեկավարում էր Բուլղարիայի ազգային վերածնության նշանավոր հեղափոխական գործիչ Ստոյան Զաիմովը, կամավոր հիմունքներով միջոցներ հավաքեց հուշարձանների կառուցման համար: Դրանք կանգնեցին Սոֆիայում, Պլևենում և Պլևենի մարզում, Սվիշտովում ու Պլովդիվում և երկրի ուրիշ շատ վայրերում: Կոմիտեի աշխատանքի արդյունք էին նաև Պլևենում կառուցված հուշապուրակները, դամբարանները և տունթանգարանները:

Առաջին հուշարձանք կառուցվեց օսմանյան լծից ազատագրվելուց չորս տարի անց: Դա Սոֆիայի նշանավոր Ռուսական հուշարձանն է, որի հեղինակն է ճարտարապետ Վոկարը: Մարմարի սալերով բարձրացրած տապը մետրանոց կոթողի վրա փորագրված են զոհված ռուս հերոսների անունները: Հուշարձանը կանգնեցված է այն վայրում, որտեղ ազատարար զորքերը ջախջախեցին և փախուստի մատնեցին դեպի Բոյի-Էֆենդի բնակավայրը (Սոֆիայի ներկայիս Կնյաժևո թաղամասը) նահանջած օսմանյան բանակը:

Սոֆիայում կա մի հրաշալի պուրակ, որը փոքր-ինչ տարօրինակ անուն է կրում «Բժշկական պուրակ»: Մայրաքաղաքի կենտրոնում է այն, ուր 1877—1878 թվականներին գտնվում էր ռուսական զինվորական բուժկայանը: Պատերազմից հետո զինվորական բժշկական անձնակազմը որոշում է բուլղարների օգնությամբ հավերժացնել իրենց զոհված ընկերների հիշատակը: Պետերբուրգում անցկացված մրցույթում ընդունվում է ճարտարապետ Ա. Տոմիշկոյի նախագիծը:

Հուշարձանը, որ ներկայացնում է քառակող բուրգ՝ գրանիտե դիակառքի հետ, կանգնեցվեց հիշյալ պուրակում, 1883 թվականին: Մարմարե սալիկներին փորագրված են 531 ռուս բժիշկների, բուժակների և բուժաշխատողների անուններ:

*ՄԻԽԱՅԻԼ ՌԱՅՉԵՎ*

*Ռուսական հուշարձանը Սոֆիայում*



*Բժշկական հուշարձանը Սոֆիայում*



# ԱՐԻՈՒԹՅԱՆ ԴԱՍ

Երևանի № 156 դպրոցի տասներորդ Բ դասարանցիները դահլիճ մտան փողի մարտակոչից քիչ անց, թմբուկների խրոխտ նրաժշտության ուղեկցությամբ: Ջոկատի հրամանատար Գայանե Մելքոնյանը զինվորականին արժանի լրջությամբ զեկուցեց.

— Պահեստի գնդապետ ընկե՛ր Արիստակես Սահրադյան, թո՛ւյլ տվեք սկսել «Արիության դասը»:

Գնդապետը ողջունեց պատանիներին, և սկսվեց դասը: Աշակերտները պատմեցին սովետական ժողովրդի հերոսական սխրանքների մասին: Նախօրոք ձայնագրված ժապավենից հնչեցին պատերազմի հերոսների նամակները, իսկ հետո պատերազմի մասնակիցներն ու վետերանները դրվագներ պատմեցին այդ հերոսամարտերից: Պահեստի գնդապետ Սահրադյանը հետաքրքիր տեղեկություններ հաղորդեց պատերազմների ավերիչ հետևանքների և դրանց սանձարձակողների՝ իմպերիալիստական տերությունների մասին:

Շահումյանի շրջանի միլիցիայի անձնագրային բաժնի պետ Ա. Ավետիսյանը հաճելի անակնկալ էր պատրաստել տասներորդ Բ դասարանցիների համար. նա հանդիսավոր պայմաններում անձնագրեր հանձնեց նրանց: Այդ առթիվ շնորհավորանքի խոսքեր ասացին մանկավարժները, հյուրերը, ժողկրթբաժնի աշխատակիցները: Տասներորդցիների անունից շնորհակալություն հայտնեց Ռ. Գալստյանը.

— Մենք՝ սովետական քաղաքացու իրավունք ստացած աշակերտներս, խոստանում ենք պատերազմի և խաղաղ, ստեղծագործ աշխատանքի հերոսների փառքի շարունակողները լինել և ամեն ինչ անել հայրենիքի ծաղկման և խաղաղության ամրապնդման համար:

Տասներորդցիների դպրոցական կյանքում վերջին միջոցառումն էր այն և տպավորիչ ու հետաքրքիր անցավ:

Իսկ դպրոցական բոլոր տարիների լավագույն աշխատանքների, միջոցառումների և հարուստ փորձի մասին պատմող նյութերը զետեղված էին գեղեցիկ ձևավորված ալբոմում: Շրջանավարտները ալբոմը հանձնեցին վեցերորդ դասարանցիներին, որպեսզի նրանք այդ լավ ավանդույթների արժանի շարունակողները դառնան:

Վ. ՄԵԽԱԿՅԱՆ

# ՀԵՔԻԱԹԻ ՆՄԱՆ Է, ԲԱՅՑ ՀԵՔԻԱԹ ՉԷ

— Ինչի՞ց սկսեցիք և ինչպե՞ս սկսեցիք,— հարցրինք նրան՝ Նոյեմբերյանի շրջանի Հաղթանակ սովխոզի հիմնադիր ու անփոփոխ դիրեկտոր, սոցիալիստական աշխատանքի հերոս Արշավիր Հայրապետյանին:

— 1949 թվականի մարտի 8-ին սկսեցինք սովխոզի ու ավանի կառուցումը: Ոչնչից պետք է ստեղծեինք և՛ նորատիպ ավան, և՛ տնտեսություն: Երկուսի հիմքն էլ նոր էինք դնելու: Ուրեմն պետք է ամուր դնեինք այդ հիմքերը:

— Ահա ձորը, և ահա ձորում խոր թաղված Դեբեդը,— շարունակում է նա,— իսկ վերևում տարածված է հարթավայրը:

Ձորը խիստ կտրտված ռելիեֆ ուներ, քարեր ու ցաքիներ էին միայն, որոնց հաղթահարելը մեծ դժվարությունների հետ էր կապված:

Այդ ժամանակ հանրապետության մեջ միայն մի ջրհան կայան կար: Ծիծեռնակաբերդինն էր դա, որը ջուրը մղում էր հարյուր մետրը վերև: Հարյուր մետր և ոչ մի սանտիմետր ավելի: Ուրեմն պետք էր գտնել այն տեղը, որի բարձրությունը հարյուր մետրից չէր անցնում:

Ամիսներ շարունակ, գիշեր ու ցերեկ Արշավիր Հայրապետյանը որոնում էր ու որոնում, չափումներ կատարում, օրվա մեջ տասնյակ անգամներ իջնում ձորն ու բարձրանում, որպեսզի գտներ այդ հարյուր մետր բարձրությունը:

Քարերի ու ցաքիների մեջ վխտում էին թունավոր կենդանիներն ու օձերը: Մի անգամ քարի գլխին ինքն էր և օձը: Տարածությունը շատ էր քիչ, իսկ ներքևում անդունդ էր: Մի պահ մարդն ու սողունը քարացած նայեցին միմյանց աչքերի մեջ:

— Մահվան աչքերին շատ եմ նայել,— վերհիշում է Հայրապետյանը,— առաջին անգամ Կերչում՝ Սև ծովի ափին մի ամբողջ գիշեր

Նա երկու միլիոն ծառ տնկեց իր ձեռքով: Իր հանած առվի ջրով կենդանություն տվեց դարավոր խոպանին: Երկու միլիոն ծառերի տերևների ու ճյուղերի վրա թողեց իր ձեռքերի հետքը:

— Դու հերոս ես,— ասացին նրան:

— Ես հողի մի սովորական մշակ եմ,— պատասխանեց նա:

Նրա անունն է՝ Արշավիր Ավագի Հայրապետյան:



ապրեցի իմ մահը: Ռազմական ուսումնարանն ավարտելուց հետո 1942-ի մայիսին միանգամից տարան Կերչ, գործող բանակ: Դեռ չէինք հասցրել հասկանալ, թե որտեղ ենք, երբ սկսվեց ռմբակոծությունը... Մարտի դաշտում նման պահեր շատ եղան իմ կյանքում: Եվ ես վարժվեցի դրան: Բայց այստեղ՝ անապատում, ուրիշ էր: Չգիտես սողունը ո՞ր կողմից կմոտենա: Չեմ վախենում, բայց՝ անորոշ տհաճ զգացում է պատճառում դրանց տեսքը:



Այգեստաններ դարձած անապատում այժմ մի քանի քառակուսի մետր տարածություն դեռ մնում է անապատային վիճակում: Մտածված կերպով թողնվել է դա իբրև թանգարան: Այդպես են անվանում տնտեսությունում: Այնտեղ թիթեռները խանձված թևիկներ ունեն, բույսերը՝ խանձված տեսք: Եվ այդ տեսքն ուներ ողջ հարթավայրը: Նրա բոլոր բնակիչները՝ օձը, կարիճը, մորմը, ուղտափուշը, օշինդրը, բոլորը նույն գույնի են: 28 տարիների ընթացքում անապատը նոր գույն առավ, կերպարանափոխվեց:

Ջրհան կայանների միջոցով Դեբեդի ջրերը հասան հարթավայր: Առաջին տնկիները շարվեցին: Դրանք պիստակենի էին, նուռ, թութ, տանձ, խնձոր, սալոր, նուշ, ընկույզ, հոն ու դեղձեր, դեղձեր... Տողերի պես շարվեցին, ոսկետառ գրքի պես լցրին անապատի մաքուր թերթերը:

Այսօր այդ հարթավայրի բերքի համբավը վաղուց է դուրս եկել հանրապետության սահմաններից, հասել միջազգային տոնավաճառներ՝ մի քանի տարի առաջ գերմանական Էրֆուրտ քաղաքում կայացած միջազգային տոնավաճառում Նոյեմբերյանի շրջանի Հաղթանակ սովխոզի դեղձերը արժանացան ոսկե և արծաթե մեդալների:

Տնտեսությունն ունի մի ուրիշ թանգարան ևս, որտեղ ցուցադրված են 28 տարիների ընթացքում ձեռք բերած կառավարական պարգևները, շքանշաններ, մեդալներ, դրոշներ, պատվոգրեր, խրախուսանքներ, ատեստատներ:

28 տարվա կյանք ունեցող ավանը գեղեցիկ ավանների համամիութենական մրցույթում գրավեց երկրորդ տեղը:

Արշավիր Հայրապետյանը արժանացել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի երկու շքանշանների, հանրապետության վաստակավոր գյուղատնտեսի կոչման, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ է, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության անդամ, իսկ անցյալ տարի պտուղների արտադրության համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթող ճանաչվելու համար նա արժանացավ կառավարական ամենաբարձր պարգևի՝ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:



Հիմա գույների խաղ է Դեբեդի հովտում: Այստեղ են տարածված նաև Հաղթանակ սովխոզի այգիները: Ամենազոր նկարիչ-բնությունը իր վրձինն է շռայլորեն շարժել այնտեղ ու բազմագույն մի գորգ արարել: Բնությունը մի հիանալի նախշանկար է հյուսել այն մարդկանց պատվին, ովքեր իրենց քրտինքն են խառնել հողին, վերածնել Հայաստան երկրի այս անկյունը, դարձրել հեքիաթային այգեստան:

Մի այսպիսի ավանդություն կա. երբ Անահիտ աստվածուհին շրջագայության էր ելնում, գոգնոցը լցնում էր բազմերանգ ծաղիկներ և հովիտները գունավորելով ման էր գալիս: Մեկ անգամ Պապաքարի բարձունքներով անցնելիս, բացվում է աստվածուհու գոգնոցը և Դեբեդաշենի հարթավայրը լցվում է հազարավոր գույներով:

Կանգնիր Պապաքարի բարձունքին և քեզ կթվա, թե Անահիտ աստվածուհին հենց նոր է այստեղով անցել: Հարյուրավոր հեկտար բազմայան ու բազմատեսակ այգիները շողում են աշնանային կախարդող գույներով: Մարդկային քրտինքով են այդ այգիները կյանքի կոչվել: Նրանք ամուր դաշն են կապել հողի, արևի ու ջրի հետ:

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# «ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ»

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Մի օր Բողարն ու Չալոն
Ընկեր դարձան մեկմեկու
Ու խաղացին իրար հետ
Առավոտից իրիկուն:

Հաջորդ օրը, ա՜յ թե ինչ,
Չալոն հանկարծ եկավ բակ,
Մեկ էլ տեսավ Բողարին՝
Մի մեծ ոսկոր թաթի տակ:

Կաղծկլտացին աչքերը,
Սիրտը բնում խենթացավ
Ու վայրենի թռիչքով
Վրա տվեց՝ հա՜ֆ, հա՜ֆ, հա՜ֆ:

Ձեռքից խլեց ոսկորը,
Ուզածին պես գզգզեց,
Թողեց նրան ցավի մեջ՝
Ավարն առավ ու վազեց:

Մյուս օրը նույն բանը
Չալոյի հետ պատահեց՝
Նրան տեսավ Բողարը
Ու ոսկորը փախցրեց:

Եվ արի տես, որ նրանք
Հաշտ են լոկ այն ժամանակ,
Երբ նրանցից ոչ մեկը
Ոսկոր չունի թաթի տակ:

# ԵՐԵԿՈ

ԻՇԽԱՆ ՍԻՄՈՆՅԱՆ

Երբ մութն էր իջնում սարերի վրա,
Լուսինը կամաց աչքերն էր թարթում,
Ես լսում էի բառաչը կովի,
Գնում հանդերից բերում էի տուն:
Երբ որ մայրիկս կթում էր կովը,
Դույլը լցվում էր կաթով փրփրուն,
Նույնիսկ լուսինն էլ իմ մոր աչքերին
Տաք կաթով լցված մի դույլ էր թվում:

# ԳԵՏԱՔԱՐ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ժայռաքարը գլորվեց,
Ներքև՝ վարա՜ր, վարա՜ր գետ,
Ալիքների մեջ նետվեց,
Էլ չի դառնա նորից ետ:
Գետը ժայռին գիրկն առավ,
Ասաց՝ ա՜յ քեզ հաստակող,
Եվ ջրերով իր վարար,
Ինչպես հմուտ քանդակող,
Զարկեց այնքան համաչափ,
Հղկեց այնպես, որ մի օր
Ժայռը դարձավ ձվի չափ՝
Չալպուտուրիկ ու կլոր:
Էլ ի՜նչ հսկա ժայռաքար,
Էլ ի՜նչ անտաշ կոպտություն,
Խաղալիք է իսկական,
Ոնց որ նախշուն ծտի ձուն:
Մի օր գետը վարարեց,
Փոքրիկ քարը նետեց ափ.
Գտավ տղան, տուն բերեց,
Ձեռքին ժայռը՝ ձվի չափ...

# Վայրի գոմշաձագը

ՋՈՅ ԱԴԱՄՍՈՆ

Արշավի էինք գնացել Եթովպիայի սահմանի մոտերքը: Բեռնավորված գրաստներով ու ջորիներով՝ բարձրանում էինք Կուլալ լեռը: Դա միայնակ, հանգած հրաբուխ է, շրջակա անապատից 2000 մետր բարձր, մշտապես ամպերով պատած: Այն ժամանակ, երբ լեռան կատարը հաճախ պարուրված է լինում թանձր մառախուղով, լանջի ցածրադիր մասերը անտանելի շոգից խանձվում են: Կուլալի գագաթը ծածկված լինելով կուսական անտառի խիտ թփուտներով, ապաստան է հանդիսանում շատ կենդանիների, մանավանդ անտիլոպների, նաև վայրի գոմեշների համար: Այդ լավ է հայտնի տեղի ցեղերին, և մենք այստեղ եկել էինք հետազոտելու որսագողության դեպքերը:

Մի անգամ անտառապետները մեր ճամբարը բերին մի նորածին գոմշաձագ, որի մորը որսագողերը սպանել էին, դա մի շատ փոքրիկ ու շատ նիհար գոմշաձագ էր, հազիվ մեկ ամսական: Խլխլոտ երկար ոտքերի վրա օրորվելով, մտավ նա մեր ճամբարը: Ծակատին երկու փոքրիկ, հազիվ նկատելի թմբեր կային՝ ապագա զանգվածային եղջյուրների սաղմերը: Նրա մուգ մոխրագույն մաշկը գրեթե ամբողջովին, երկարուկ, փափուկ ականջները նույնպես, ծածկված էին երկար մազափնջերով:

Սակայն ի՞նչ պետք է անեինք այս քնքուշ էակին: Կուլալ լեռան կատարին մնալու էինք ընդամենը մի քանի օր, որից հետո սկսվելու էր մեր ուղևորությունը անապատի միջով: Եվ քանի որ Էգիտոկը սովոր էր Կուլալի կլիմային և անտառային զով ըստվերներին, մենք չվստահեցինք վերցնել նրան մեզ հետ ոտքով այդ դժվար, շոգ վայրով անցնելիս: Ջորջն ասաց, որ երևի հարկավոր է գնդակահարել նրան: Բայց դա անելու բան չէր: Մի՞թե ուրիշ ելք չկար: Հանկարծ իմ գլխում միտք ծագեց. իսկ եթե գոմշաձագը տանենք մեզ հետ անապատով, ուղտի վրա դրած, հետո էլ դնենք մեր բեռնավտոյի մեջ,

որը գտնվում էր այնտեղից 250 կիլոմետր հեռու: Այնուհետև կարելի էր նրան ուղարկել մեր ընկերոջ ֆերման, որը գտնվում էր Քենիի լեռնաստորոտին, որի կլիման հիշեցնում էր Կոլալի կլիման:

Մեր այդ ընկերոջը վաղուց հետաքրքրում էր այն հարցը, թե կարելի՞ է արդյոք վայրի գոմեշը խաչաձևել ընտանի գոմեշին: Մինչև այժմ նրան չէր հաջողվել այդ փորձը կատարել, որովհետև նա ուներ միայն էգ գոմեշներ: Եթե մեր փոքրիկ ձագուկը այս ճամփորդությանը դիմանար, մենք ոչ միայն փրկած կլինեինք նրա կյանքը, հնարավոր է, որ նաև օգնեինք լույս սփռելու հիբրիդ ստանալու պրոբլեմի վրա:

Իմ առաջարկի օգտին էր խոսում մի այլ հանգամանք ևս: Մեր խմբում կալանավորված շատ որսագողեր կային: Նրանք արագ-արագ կրճատում էին մեր ուտեստեղենի պաշարները, ուստի անհրաժեշտ էր նրանց բոլորին ուղարկել Բարագոն, ուր սպասում էր մեզ մեր բեռնավտոն: Նրանց հետ կարելի էր ուղարկել նաև գոմշաձագը: Պահանջվում էին միայն ուղտեր՝ Էգիտոկին փոխադրելու համար:

Մենք խնդրել էինք Սամբուրո ցեղի տեղական բնակիչներին ամեն օր կաթ բերել փոքրիկի համար: Բացատրեցինք նրանց, որ կուզենայինք ժամանակավորապես զիջեին մեզ մի կթու կով, երկու ուղտ, և մի հովիվ, մինչև Բարագոն: Իսկ մինչ այդ մենք հույս ունեինք Էգիտոկին սնել այնպես, որ նա մինչև ճանապարհվելը լավ կազդուրվի, ամրանա:

Գոմշաձագը ագահաբար ծծում էր շշով կաթը և մի քանի օրվա մեջ այնպես ուժեղացավ, որ ազատ կարողանում էր մարդուն վերև նետել: Այդ դարձավ նրա սիրելի խաղը: Նկատելով, որ մեկնումեկը անուշադիր կռացել է, ասենք, հանդերձանքների արկղի վրա, Էգիտոկը ետևից զգույշ մոտենում էր և գլուխն արագ խոթում իր զոհի ոտքերի արանքն ու հանկարծ վերև նետում ոչինչ չկասկածող խեղճին այնպես, որ նա մինչև գետին ընկնելը օդում պտույտ էր գործում: Կողքից դիտողները բոլորը գտնում էին այս խաղը շատ զվարճալի և ուրախ քրքջում էին: Տիծաղը, ասես, խրախուսում էր Էգիտոկին, և նա ոչ մի առիթ բաց չէր թողնում իր տրյուկը կրկնելու համար:

Չնայած այդ կոպիտ խաղին, մեր ծառայողները սիրում էին Էգիտոկին և ամեն մեկը խարույկի մոտի լավագույն «քնելու տեղը» առաջարկում էր նրան: Ես զգացվում էի, տեսնելով, թե ինչպես մեր մարդիկ իրենք տեղավորվում էին տաք խարույկից հեռու, որպեսզի լավագույն տեղը զիջեն գոմշաձագին: Առանձնապես սիրում էր նրան անտառապետներից մեկը, և ես հաճախ էի տեսնում, թե ինչպես նա, չնկատելով, որ նայող կա, փաղաքշելով իր փոքրիկ ընկերոջը, նրա հաստ կաշվի վրայից հեռացնում էր փշերը:

Էգիտոկին ես էի կերակրում: Ուստի նա, առանձնապես կապվել էր ինձ հետ և ամենուր կրնկակոխ հետևում էր ինձ: Երբ մենք փոխադրում էինք ճամբարը, նա հնազանդ, տրտինգ տալով վազում էր իմ ետևից, ծծելով իմ բթամատը, որը յուրօրինակ սանձափոկի դեր էր կատարում:

Կոլալի լեռնածերպերից մագլցելիս, մենք հաճախ էինք հանդիպում գոմեշների: Գրեթե մեր ամբողջ ճանապարհն անցնում էր խիտ անտառաթփուտների կտրուկ զառիթափներով կամ սուր լեռնակատարներով: Այդ պատճառով, երբ վտանգավոր կածանների վրա հանդիպում էինք այդ վիթխարի կենդանիներին, մտածում էինք. առաջ ո՞վ կթեքի ճանապարհը: Ինձ վախ էին պատճառում այդ հսկա զանգվածները, որ սևեռուն նայում էին մեզ, առաջ մղելով պինդ ճակատներն ու սուր եղջյուրները: Բարեբախտաբար, միշտ նրանք էին ետ դառնում:

Երկու շաբաթ մեզ մոտ մնալուց հետո, Էգիտոկը դարձավ բոլորովին ընտանի և նրան խնամելը շատ հեշտացավ: Նա կազդուրված տեսք ուներ, և մենք որոշեցինք ռիսկ անել, ու նրան անապատն անցկացնելով, հասցնել Բարագոն բնակավայրը: Սամբուրոները (տեղացիները) բերին մեզ համար և՛ կթու կով՝ հորթի հետ, և՛ երկու ուղտ, որոնք նրանք մտադիր էին ուղարկել Բարագոն: Եվ այս-

*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*





# ՄՐՈՀՈՒՆԴ ԳԵՂԱՏԵՍԻԼ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանության դոկտոր-պրոֆեսոր

Հայաստանի բնաշխարհը հարուստ է այնպիսի տեսակներով, որոնք աճում են խիստ սահմանափակ տարածության վրա և երկրագնդի այլ վայրերում չեն հանդիպում: Դրանք այն բույսերն են, որոնք բուսաբանների համար բացառիկ մեծ հետաքրքրություն են ներկայացնում և որոնք ըստ էության մեզ հարուստ տեղեկություններ են տալիս բուսական աշխարհի զարգացման օրինաչափությունների մասին: Դրանց անհետացումը կրրկնակի կորուստ է գիտության համար: Նախ, որ բնությունից պակասում է մի բուսատեսակ և երկրորդ, որ անհետանում է բուսական աշխարհի պատմական զարգացման օղակներից մեկը, որի հետևանքով բույսերի առաջացման և տարածման բարդ պրոցեսի որոշ մանրամասնություններ մեզ համար անհայտ են մնում:

Բուսական ծածկոցի մասին բավական գիտելիքներ չունեցող մարդը կարող է անցնել դաշտերով, անտառներով և չնկատել առաջին հայացքից սովորական թվացող այն բույսերը, որոնք բուսաբանների համար հսկայական հետաքրքրություն են ներկայացնում:

Դրանց թվին է պատկանում նաև գեղատեսիլ սրոհունդը, կամ արևքուրիկը, որը պատկանում է սրոհունդազգիների ընտանիքին: Այդ արտակարգ գեղեցիկ ու շքեղ խոտաբույսը աճում է միայն Հարավային Անդրկովկասում, ընդամենը երեք, մեկը մյուսից ոչ հեռու գտնվող վայրերում: Հայաստանում հանդիպում է Վայքում, Արենի (Արփա գետի ձախափնյա վտակի կիրճում) և Խաչիկ գյուղերի շրջակայքում, ծովի մակերևույթից մինչև 1500 մ. բարձրության վրա, իսկ Նախիջևանի ինքնավար հանրապետությունում հայտնի է միայն Ազնաբերդ գյուղի մոտ, որը ծովի մակերևույթից բարձր է 1450 մետր:

Բազմամյա բույսեր են, մինչև 20 սմ. բարձրությամբ, 5—7 սմ. երկարությամբ ընձյուղներով: Տերևադասավորությունը հակադիր է: Տերևները ամբողջաեզր են: Բաժակաթերթիկները 5 հատ են, երբեմն՝ 4, առէջները շատ են: Պսակաթերթիկները վառ դեղնավուն են: Ընդհանրապես ծաղիկը շատ գեղեցիկ է և բավականին խոշոր:

Ներկայումս գեղատեսիլ սրոհունդը, որպես հազվագյուտ և անհետացման եզրին գտնվող բուսատեսակ, գրանցված է բուսականության «Կարմիր գրքում» և պահպանության խիստ կարիք է զգում: Իհարկե, Հայաստանի բուսաբանները և բնության պահպանության ընկերության մասնագետները հոգ են տանում, որ այս հազվագյուտ և արժեքավոր տեսակը պահպանվի, սակայն այդ խնդիրը դժվար է իրականացնել առանց պիոներ-դպրոցականների ակտիվ մասնակցության: Խոսքը հատկապես վերաբերում է Արենի և Խաչիկ գյուղերի պատանի բնասերներին, որոնք ծանոթանալով գեղատեսիլ սրոհունդի բնական բուսուտներին, պետք է հետևեն, որ անասունների արածեցման, նոր հողերի իրացման, խոտհնձի, նոր ճանապարհներ անցկացնելու կամ բնական լանդշաֆտների ամբողջականությունը խախտող տնտեսական այլ միջոցառումների հետևանքով այդ բուսուտները չոչնչանան: Նրանց ջանքերի շնորհիվ հնարավոր է, որ այդ վայրերում հայտնաբերվեն այս հազվագյուտ բույսի նոր, մինչև այժմ անհայտ բուսուտներ: Նման դեպքերում այդ մասին անմիջապես պետք է հայտնել ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի բուսաբանության ինստիտուտի մասնագետներին:

պես մեր գոմշաձագի հետ կապված ամեն ինչը դասավորվեց հաջող, նույնիսկ այն, թե Էգիտոկին ինչպես բարձրացնել ուղտի վրա և ամրացնել, ստացվեց շատ ավելի հեշտ, քան սպասում էինք:

Իրենց քոչի ժամանակ տեղացիները իբրև բեռնաթամբ օգտագործում էին զամբյուղանման մի հարմարանք, բաղկացած փայտե չորս շրջանակից, դաբաղած կաշեփոկերով հյուսված:

Զամբյուղի մեջ մենք խոտ դրինք, և Էգիտոկին այնպես կապոտեցինք, որ նա իրեն զգա օրորոցի մեջ պառկած: Այնուհետև ամեն ինչը բարձեցինք դժգոհ, փնչացող ուղտին: Գոմշաձագին հսկելը հանձնարարվեց անտառապետին, և նրա խրախուսական «տտո՜ւ-տտո՜ւ»-ների ուղեկցությամբ, տարօրինակ քարավանը ճանապարհ ընկավ: Երբը գլխավորում էր հերթապահ ուղտը, նրա պոչը կապված էր այն ուղտի վզին, որի վրա բազմած էր Էգիտոկը, այնուհետև գնում էր կերակրող կովը՝ իր հորթուկի հետ, և վերջապես քարավանը եզրափակում էին կալանավորված որսագողերը և նրանց հսկիչները: Մենք դիտում էինք, թե ինչպես է քարավանը ցած իջնում լեռից, մինչև որ աչքից անհետացավ:

Որսագողերի մեծ մասը կալանավորվել էին գոմշաորսի օրենքները խախտելու համար: Եվ ես մտածում էի՝ բախտի ի՜նչ ծաղր. գոմշաձագը պատժելու փոխարեն, առաջնորդում էր նրանց, որոնց զոհն էր դարձել իր մայրը:

Մի երկու շաբաթ անց, մենք Բարագոնում հասանք քարավանին, ուր մեզ ցույց տվին սրտագին ընդունելություն: Բոլորը հպարտանում էին Էգիտոկով: Նա ուրախ ու զվարթ տեսք ուներ:

Վերջապես մենք փոքրիկ ցլիկին հանձնեցինք մեր բարեկամին, որին անսահման ուրախացրեց մեր նվերը:

# ԵՐԿՈՒ ԿԱՊԻԿ

(Հեքիաթ)



ՎՅԱՉԵՍԼԱՎ ՆՈՍՈՎԻՉ
(10-րդ դասարանի աշակերտ)

Շա՜տ հին, հին ժամանակներում կային երկու կապիկ: Նրանցից մեկը մշտապես խելոք կապկի տպավորություն էր թողնում, դրա համար նրան հենց այդպես էլ կոչում էին՝ Խելացի Կապիկ: Իսկ մյուսը մի տեսակ տարօրինակ էր, արտասովոր, և այդ պատճառով ինչ-որ մեկը նրա անունը Խելառ Կապիկ էր դրել:

— Այդ ի՞նչ ես անում,— հարցրեց Խելացի Կապիկը, և նրա աչքերը զարմանքից մեծացան ու այնպես կլորացան, կարծես հնդընկույզի երկու տապակ լինեին:

Իսկապես էլ զարմանալու բան կար: Խելառ Կապիկը... աշխատում էր: Նա կանգնել էր ետևի թաթերին, առջևի թաթերով մի փայտ բռնել ու, հողը փորելով, ինչ-որ բույսի արմատներ էր հանում:

— Սա ի՜նչ բան է, դու աշխատո՞ւմ ես,— զարմացավ Խելացի Կապիկը,— Վա՜յ, չեմ կարող: Վա՜յ, ես հիմա ծիծաղից կմեռնեմ: Հա՛, հա՛, հա՛... Մի սրա՞ն տեսեք: Աշխատո՞ւմ է:

Խելացի Կապկին հազվադեպ էր հաջողվում այդպես ծիծաղել:

— Դե՛հ, աշխատի՛ր, աշխատի՛ր: Լա՜վ չարչարվիր: Աշխատանքը, գիտե՞ս, խելառներին է սիրում: Հա՛, հա՛, հա՛: Վա՜յ, չեմ կարող, վա՜յ, մայրի՜կ ջան, էլ չեմ կարող: Լավա՞ծ բան է, որ կապիկն աշխատի: Իսկույն երևում է, որ դու ցնդած ես: Եվ ո՞ւմ է պետք: Մի ի՞նձ նայիր: Ես խելոք կապիկ եմ և իմ քեֆին ապրում եմ: Պետք է իմանալ ապրելու ձևը:

Խելառ Կապիկը լուռ էր: Եվ ի՞նչ կարող էր նա անել: Խելացի Կապիկը իրավացի էր յուրովի: Առանց աշխատանքի էլ կարելի է ապրել: Միայն պետք է կարողանալ: Հենց դրա համար էլ Խելառ Կապկին մնում էր միայն լռել ու աշխատել:

Շատ ու շատ տարիներ անցան: Խելացի Կապկի ծոռան ծոռի ծոռները շարունակում էին օրորվել ծառերի ճյուղերին, ծամածռություններ անել ու անդադար կրկնել.

— Ալ քեզ բա՞ն: Աշխատում են: Հա՛, հա՛, հա՛: Եվ տեսեք, թե ի՞նչ օրը գցեց աշխատանքը այդ խելառ կապիկներին: Նույնիսկ կապկի կերպարանքը կորցրին...

Նրանք հատկապես պարծանում էին, երբ կապիկ ցույց տալու համար Մարդը զավանանց էր բերում իր երեխաներին:

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ


Լույս է տեսնում 1928 թվականից



ՊԻՈՆԵՐ 5. 1978 Թ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ


Ռ. ԲԱԲԼՈՅԱՆ — Կարմիրփողկապավորների գվարդիայի հրամանատարը . . . 2
Վ. ԿԱՐԵՆՑ — Մայիս . . . 4
Հ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ — Պատիժը . . . 4
Մ. ՂՈՒԿԱՍՅԱՆ — Ֆինլանդիա, լճերի երկիր . . . 9
Վ. ԱՆԱՆԻԿՅԱՆ — Գարուն . . . 9
Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ — Զրույցներ լեզվի մասին . . . 10
Դ. ՈՒՐԿԵԲԱ — Մոր ժպիտը . . . 12
Ա. ԲԱՐՏՈ — Գարնանային անձրև . . . 12
Ա. ՊԱՐՍԱՄՅԱՆ — Նամակը . . . 12
Հ. ԳՈՐՄՈՒՆՅԱՆ — Անտառի նախապատը . . . 13
Մարիետա Շահինյան (ծննդյան 90-ամյակը) . . . 14
Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ — Պետրոս I-ը և հայերը . . . 15
Գ. ԲԱԲԱՅԱՆ — Ծիտը . . . 16
Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ — Իրիկնամուտ . . . 16
Ռ. ԱՂԱԲԵԿՅԱՆ — Հանելուկներ . . . 16
Մ. ՌՈՒՅԶԵԿ — Համամոլորակային սիրո և երաժշտության հաշվարկները . . . 17
Վ. ՄԵԽԱԿՅԱՆ — Արիության դաս . . . 18
Ա. ԱՐԱԶՅԱՆ — Հեքիաթի նման է, բայց հեքիաթ չէ . . . 18
Ի. ՍԻՄՈՆՅԱՆ — Երեկը . . . 20
Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ — «Ընկերություն» . . . 20
Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ — Գետափին . . . 20
Ջ. ԱԴԱՄՍՈՆ — Վայրի գոմշաձագը . . . 20
Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ — Սրտանց գնդակներ . . . 22
Վ. ՆՈՍՈՎԻՉ — Երկու կապիկ . . . 23
Մ. ՈՍԿԱՆՅԱՆ — Հրացանի ձայնը . . . 24


Շապիկի առաջին էջում՝ Գր. ԽԱՆՋՅԱՆ — «ՄԱՆՈՒՇԱԿ»


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱԳՈՒՐՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04579: Պատվեր 479: Տպաքանակ 55600: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 26.IV 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մելքումյանի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806





# Հրացանի ձայնը

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*





Անտառի մեջ հրացան է որոտում,
Փշրվում է անդորրության հայելին,
Կածանի պես հեռվում ծուխն է բարակում,
Անհետանում ձայների հետ գայլերի:

Եվ թռչնու սիրտն է նույնիսկ վախ ընկել,
Արջ ու աղվես արահետով փախչում ցած,
Ամեն մեկն իր հետքն է փորձում թաքցնել,
Ամեն թփից նայում է մի հրացան:



Թռչունները աղմկում են անհանգիստ,
Էլ ի՞նչ երգի ու ասմունքի երեկո,
Երբ թնդում է հրացանի ձայնը խիստ
Բների մոտ, այսպես օրը-ցերեկով:

Վրդովվում է ոգին հզոր անտառի,
Անտառապահի չորեր հագած հայտնվում,
Կայծկլտում են նրա աչքերը բարի,
Գազանները են նրան անխոս հետևում:

Պիտի խաղաղ մնա անտառը հավերժ
Քամիների սոսափի տակ, ծափի տակ,
Որ երջանիկ ապրեն արջեր ու բվեն,
Չդողդողա վախից ոչ մի նապաստակ...



Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ



